Աշխատությունը հրատարակվում է ՀՀ ԳԱԱ Պատմության ինստիտուտի գիտական խորհրդի երաշխավորությամբ

RAA ԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Գիրք Է

# ԿՈՎԿԱՍՅԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՎԱՔԱԾՈՒՆ

ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# THE ARMENIAN COLLECTION OF THE CAUCASIAN MUSEUM

SAMVEL KARAPETYAN

# АРМЯНСКАЯ КОЛЛЕКЦИЯ КАВКАЗСКОГО МУЗЕЯ

САМВЕЛ КАРАПЕТЯН

ՀՀ ԳԱԱ «ԳԻՏՈՒԹՅՈՒՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 2004

ՀՏԴ 941 (479. 25)
ԳՄԴ 63.3 (2Հ)
Կ - 294

Խմբագիր՝ **Անուշավան Զաքարյան**
*բանասիր. □իտ. թեկնածու*

Կ - 294 Կարապետյան Սամվել
**Կովկասյան թանգարանի հայկական հավաքածուն.**– Եր.:
ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատ., 2004.–96 էջ

Գիրքը ներկայացնում է Այսրկովկասի ամենահին թանգարաններից մեկի՝ Կովկասյան թանգարանի և նրա հայկական հավաքածուների համառոտ պատմությունը:
Հասցեագրվում է թանգարանագետներին և ընթերցասեր հասարակությանը:

В книге представлены краткая история и сведения об армянской коллекции одного из древнейших историко-естествоведческих музеев, основанных в Закавказье - Кавказского музея.
Работа предпослана специалистам-музееведам и широкой читательской аудитории.

The present volume treats the brief history of the Armenian collection of the Caucasian Museum, one of the ancient Museums of History and Natural Sciences founded in Transcaucasia.
The work is addressed to specialists in museums and the general reader.

ԳՄԴ 63.3(2Հ)

Կ $\frac{0503020913}{703(02)2004}$ 2004 թ. ISBN 5-8080-0584-1

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ԸՆԹԵՐՑՈՂԻՆ

Սույն աշխատության ստեղծման գաղափարը ծագել է 1985 թ., երբ առիթ ունեցանք Վրաստանի «Արմազի» թանգարանում տեսնելու երբեմնի հանրահայտ Կովկասյան թանգարանից այստեղ փոխադրված և անմխիթար ու լքված վիճակում գտնվող հայկական հուշակոթողները: Հետաքրքրվելով դրանց ճակատագրով և խորամուխ լինելով նյութի մեջ՝ ցավալիորեն բացահայտվեց մեր ժողովրդի հանդեպ գործված ևս մեկ անարդար իրողություն, որը հիմնականում առնչվում է Առաջին աշխարհամարտի հետևանքներին: Մշակութային հազարավոր արժեքներ, որոնք պատերազմի դժնդակ օրերին ազգային մշակույթի մեր նվիրյալները մեծագույն զոհաբերություններով մի կերպ կարողացել էին փոխադրել ժամանակավոր ապաստանավայր նկատված Թիֆլիսի Կովկասյան թանգարան, 1919 թ. հաստատության ազգայնացումով, փաստորեն, բռնազավթվեցին Վրաստանի Հանրապետության կողմից:

Հայաստանի առաջին Հանրապետության պատասխանատուները, գիտակցելով հարցի՝ ազգային-պետական կարևորությունը, նույն՝ 1919 թվականին, սկսեցին բանակցել վրացական իշխանությունների հետ թանգարանի 2/3-րդ մասը կազմող հայկական մշակութային արժեքները Հայաստանին վերադարձնելու համար: Եվ, սակայն, չհաջողվեց:

Հայաստանի խորհրդային «եղբայրասեր» իշխանություններն իրենց յոթանասունամյա կառավարման ընթացքում էլ չմտաբերեցին կորուստը, իսկ Վրաստանի ոչ պակաս «եղբայրասեր» իշխանությունները, անվերջ տեղից տեղ փոխադրելով, զանազան թանգարանների և ինստիտուտների միջև ցրելով, մասնատեցին և զգալի մասով էլ «խնամքով» փչացրին բռնազավթված հայկական հավաքածուները:

1991 թ. ի վեր, մեկ դարի մեջ երկրորդ անգամ անկախացած և հաղթարշավով 21-րդ դար թևակոխած Հայաստանը, կարծում ենք, տեր կկանգնի դրանց և դատապարտելով՝ կպահանջի հայրենիք վերադարձնել դրացի Վրաստանի կողմից 1919-ից բռնազավթված երբեմնի Կովկասյան թանգարանի հայկական արժեքները, ինչ էլ որ դրանցից մնացած լինեն:

Խորին շնորհակալություն եմ հայտնում Ս. Դարչինյանին, Հ. Սանասարյանին, Հ. Զաքարյանին, Ա. Ղուլյանին և Հ. Բաղալյանին՝ սիրահոժար տրամադրած լուսանկարների և զանազան այլ նյութերի համար:

Երախտիքի զգացումներս եմ փոխանցում նաև գրքի հրատարակության հովանավորներ Վարդապետյան ամուսիններին և «Զավեն և որդիք» հրատարակչատանը:

# TO THE READER

The idea of creating the present work was born in 1985. Then we had the opportunity to see the Armenian exhibits of the former Caucasian Museum kept in the Armazi Museum in a state of utter dereliction. Making inquiries into the fate of those exhibits and conducting research on the relevant material, we regretfully discovered another manifestation of the injustice done to the Armenian nation, actually one of the consequences of World War I.

In the chaotic days of the war the devotees of our national culture made every possible sacrifice to somehow move thousands of works of Armenian culture to the Caucasian Museum, Tiflis, which was regarded as a provisional haven. All those valueable items, however, were misappropriated by the Georgian Government with the nationalization of the Museum in 1919.

In the same turbulent year of 1919, realizing the national and state significance of the issue, the authorities of the first Republic of Armenia entered into negotiations with the Georgian Government for the restitution of the Armenian exhibits, which made up two-thirds of the Museum's collection. All their endeavours, however, were in vain due to the complicated political situation and, especially, the untimely loss of Armenia's independence.

The issue was consigned to complete oblivion throughout the seventy years of the reign of the "fraternal" soviet authorities of Armenia. The "brotherly" Soviet Republic of Georgia, meanwhile, "carefully" marred the misappropriated Armenian exhibits by endlessly moving them from one museum to another and from one institute to the other.

The Republic of Armenia, that gained independence for a second time in the 21-st century, gives us hope that despite the cosmopolitism that the country has inherited from the soviet regime (regretful as it is, it has become part and parcel of our very essence), it will finally acquire enough strength to condemn the appropriation of the Armenian exhibits of the former "Caucasian Museum" by the neighbouring Georgian state and demand their restitution to their rightful owners, regardless of what has survived of the original collection.

To conclude, we would like to express our profound gratitude to S. Darchinian, H. Sanasarian, H. Zakarian, A. Ghoulian and H. Badalian, who willingly provided us with materials and photos vital for the present work.

We also express our deepest gratitude to Mr. and Mrs. Vardapetian for their sponsorship of the publication of the book and the publishing house "Zaven & Fils", Beirut, Lebanon.

# К ЧИТАТЕЛЮ

Идея создания книги зародилась в 1985 г., когда нам впервые выпала возможность увидеть в музее “Армази” армянские памятники, перевезенные сюда из “Кавказского музея” Тифлиса, сохранность которых оставляла желать лучшего.

Изучение этих памятников и ознакомление с относящимися к ним материалами выявило факт еще одной вопиющей несправедливости в отношении армянского народа, имевшей место в результате первой мировой войны.

Множество культурных ценностей, ценою невероятных жертв перевезенных в тифлисский “Кавказский музей” в трудные годы войны подвижниками национальной культуры, в 1919 году фактически было конфисковано грузинскими властями в результате национализации музея.

Понимая важность вопроса, государственные мужи Первой республики Армении в том же 1919 году вступили в переговоры с грузинскими властями по вопросу возврата Армении 2/3 музейных экспонатов, касающихся армянской культуры. Однако переговоры не увенчались успехом в силу сложной политической ситуации и потери независимости.

Власть предержащие Армении на протяжении 70 лет не удосужились вспомнить о факте этой огромной потери, а власти Грузии, движимые “братским чувством” к соседней республике, “позаботились” о плохой сохранности конфискованной армянской коллекции, перевозя ее с места на место и распределив по разным музеям и институтам.

Надеемся, что на протяжении одного столетия дважды приобретшая независимость и победоносно вступившая в XXI век Армения, вопреки унаследованному от советского периода трагическому космополитизму, нивелировавшему национальный облик, найдет в себе силы потребовать и вернуть на родину национальные культурные ценности, с 1919 года конфискованные Грузией.

В заключение хочу выразить благодарность С. Дарчиняну, А. Санасаряну, О. Закаряну, А. Гуляну и О. Бадаляну, любезно предоставившим нам различные материалы и фотоснимки.

Выражаю искреннюю признательность спонсорам книги - супругам Вардапетян и издательству “Завен и сыновья”.

# ԹԱՆԳԱՐԱՆԻ ՍՏԵՂԾՄԱՆ ԵՎ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ

**Թանգարան հիմնելու նախապատմությունը.** Կովկասում թանգարան հիմնելու գաղափարն արծարծվել է դեռևս 1840-ական թվականներին՝ Կովկասի փոխարքա Միխայիլ Վորոնցովի (1844-1854 թթ.) պաշտոնավարության ժամանակ[1]: 1852 թ. ապրիլի 5-ին Կարգադրիչ կոմիտեն քննարկել է այդ խնդիրը, և հանձնարարվել է գրող, իշխան Վլադիմիր Ալեքսանդրովիչ Սոլլոգուբին կազմել նախագիծ: Շուտով՝ մայիսի 10-ին, ընդունվում է Վ. Ա. Սոլլոգուբի նախագիծը, և Ռուսական կայսերական աշխարհագրական ընկերության կովկասյան բաժանմունքն ստեղծում է իր թանգարանը[2]: Այնուհետև որոշվում է գտնել հարմար շենք, կազմել ծրագիր և կանոնադրություն (այն անձանց համար, ովքեր ցանկանում էին մասնակցություն ունենալ թանգարանի ստեղծման գործում), ստեղծել Կովկասի ազգագրությունն ուսումնասիրող հատուկ հանձնախումբ: Վերջինիս անդամագրվել են նաև իշխան Վ. Ա. Սոլլոգուբը, Ա. Բ. Իվանիցկին, Գ. Ա. Տոկարևը, Ա. Պ. Բերժեն և իշխան Չելոկաևը: Ընտրվում է նաև թանգարանի տնօրինության կազմը (Վ. Ա. Սոլլոգուբ, Կ. Լ. Չերմակ)՝ Ե. Ս. Անդրեևսկու նախագահությամբ: 1852 թ. օգոստոսի 1-ին 5 տարի ժամկետով և տարեկան 600 արծաթե ռուբլով վարձակալվում է փոխգնդապետ Ռոգալիա Լիպինսկայայի տան (հասցեն՝ Ալեքսանդր Ճավճավաձեի փ. 6, Կոմենդատսկայա՝ այժմ Գրիբոյեդովի փող.) վերին հարկը (բաղկացած էր 7 սենյակից)[3]:

1852 թ. աշնանը Ռուսական կայսերական աշխարհագրական ընկերության կովկասյան բաժնի Վերահսկիչ կոմիտեն 325 արծաթ ռուբլի է հատկացնում ավստրիահպատակ բնախույզ Ֆրիդրիխ Բայերնին՝ Կովկասի բնագիտական առաջին հավաքածուով թանգարանը համալրելու համար[4]:

1852 թ. վերջին թանգարանի ցուցանմուշների թիվը հասնում էր 105-ի (հիմնականում ազգագրական իրեր էին՝ նվիրված Վ. Ա. Սոլլոգուբի կողմից), իսկ 1854-ին արդեն՝ 3315-ի[5]: Նվիրատուների թվում հիշվում են նաև Ա. Բ. Իվանիցկին, Մ. Ս. Վորոնցովը, Ա. Ն. Բեկետովը:

1853 թ. հունվարի 27-ին ընտրվում է թանգարանի տնօրինությունը:

Այդ շրջանում թանգարանի տնօրինության անդամների մեջ հետաքրքրությունն առանձնապես մեծ է եղել ազգագրության նկատմամբ: Շուտով թանգարանը համալրվում է այդ բնագավառի մեծարժեք հավաքածուներով (նվիրատուներ՝ Մ. Վորոնցով, Վ. Սոլլոգուբ, Ռ. Էրիսթով, Գ. Տոկարև, Մակինցյանց, Ա. Բերժե, Ռոմանով և այլք): Ինչ վերաբերում է բուսաբանության և կենդանաբանության բնագավառի նյութերին, ապա դրանցով թանգարանը համալրվում էր անհամեմատ ավելի դանդաղ:

1856 թ. մայիսի 5-ին թանգարանն իր դռները բաց է անում այցելուների առջև (մուտքը միայն կիրակի օրերին, ժամը՝ 12-14-ը): Թվում էր, թե աշխատանքները մտել են բնականոն ընթացքի

---

1 **N. N.**, Исторический очерк возникновения и развития Кавказскаго музея.– "Кавказ", 1903, № 78, с. 2.
2 **Джавахишвили А. И.**, Краткий обзор прошлой и будущей деятельности Государственного Музея Грузии им. акад. С. Н. Джанашиа.– «ՀՍՍՌ ԳԱ Տեղեկագիր», 1950, № 8, էջ 111: Նաև՝ **Бочоришвили А.**, Тбилиси как один из научных центров.– «ՀՍՍՌ ԳԱ Տեղեկագիր», 1958, № 10, էջ 4: Նաև՝ **Жордания Г.**, История возникновения Кавказского музея, Тифлис, 1951, с. 120.
3 **Жордания Г.**, նշվ. աշխ., էջ 120:
4 "Коллекции Кавказскаго музея", т. VI, Тифлис, 1912, с. 77.
5 **Жордания Г.**, նշվ. աշխ., էջ 126:



*Կովկասյան թանգարանի շենքի առաջին նախագիծը (չի կառուցվել)*

մեջ, սակայն հաստատությունը ծանր կացության առջև է կանգնում: Շուտով ոչ միայն դադարեցվում են թանգարանային նյութերի համալրումն ու հարստացումը, այլև տնօրինության կազմի արձակումով թանգարանում տեղ գտած բազմաթիվ արժեքավոր հավաքածուները 1861 թ. հայտնվում են գրեթե անխնամ ու անտեր վիճակում և ամբողջովին քայքայվում[6]:

1858 թ. օգոստոսին լրանում է Ռ. Լիպինսկայայի հետ կնքած տարածքի վարձակալման պայմանագրի ժամկետը և թանգարանը գրասենյակի և գրադարանի հետ փոխադրվում է տիտուլյար խորհրդական Իվան Զուբալովի` Ճավճավաձեի փողոցում գտնվող տունը: Վարձակալման պայմանագիրը կնքվում է 6 տարով` 600 արծաթ ռուբլով[7]:

1861 թ. մայիսը ճակատագրական էր Կովկասյան թանգարանի համար. նախ թանգարանի տնօրինության նախագահ Ա. Նիկոլային Թիֆլիսից մեկնելու պատճառով ազատվում է աշխատանքից: Ապա Կարգադրիչ կոմիտեի նորընտիր կազմը ոչ միայն բացասական է վերաբերվում թանգարանի գործունեությանը` նշելով, որ «...Ամենից առաջ անհրաժեշտ էր կենտրոնացնել միջոցները` դադարեցնելով բոլոր անօգուտ ծախսերը: Առաջին պլանում, իհարկե, թանգարանն էր»[8], այլև քննարկվում է թանգարանի լուծարման հարցը[9]:

1862 թ. թանգարանը վարձակալում է Գոլովինյան պողոտայի (այժմ` Ռուսթավելու պողոտա) վրա գտնվող Գամազովի տունը[10]:

1864 թ. հունվարին նախկին փոխարքա իշխան Մ. Վորոնցովը Թիֆլիսում հաստատված գերմանացի բնագետ Գուստավ Ռադդեին հանձնարարում է կազմել երկրամասում կենսաբանական և աշխարհագրական ուսումնասիրություններ կատարելու ծրագիր: Շուտով ներկայացված ծրագիրը հաստատվում է, և գործը սկսվում է Կոլխիդայի հովիտների բուսակենդանական աշխարհի հետազոտմամբ[11]:

1864 թ. օգոստոսին թանգարանը շենքային հարմարություններ չունենալու պատճառով լուծարվում է. գրքերը տեղափոխվում են Կովկասյան զինվորական շրջանի շտաբի գրադարան, իսկ գրասենյակը զբաղեցնում է գործերի կառավարիչ Դ. Ի. Կովալենսկու բնակարանը[12]:

6 **N. N.**, նշվ հոդվ., էջ 2:
7 **Жордания Г.**, նշվ. աշխ., էջ 144:
8 Նույն տեղում, էջ 163, 164 (բնագրում` “...Надо было прежде всего сосредоточить средства, прекратив все безполезные расходы. На первом плане стоял, конечно музеум”):
9 Նույն տեղում, էջ 164:
10 Նույն տեղում, էջ 168:
11 **N. N.**, նշվ հոդվ., էջ 2:
12 **Жордания Г.**, նշվ. աշխ., էջ 168:





*Կովկասյան թանգարանի առաջին շենքի նախագիծն ու տեսքը (ներկայիս Գրիբոեդովի և ճավճավաձե փողոցների հատույթում)*

**Թանգարանը վերաբացման ընթացքում.** մեկ տարի անց՝ 1865 թ. հունիսի 14-ին, կառավարությունը 2 տարի ժամկետով հաստատում է 3 բաժնից (բուսաբանական, կենդանաբանական և հանքաբանական) բաղկացած թանգարանի աշխատակազմի հաստիքները: Մինչ թանգարանային հատուկ շենքի կառուցումը՝ զբաղեցնում է Սերգեևյան փողոցի վրա գտնվող Ծովյանների՝ 3 սենյակից բաղկացած սեփական տունը[13]:

Բնակարանն իր մակերեսով թանգարանի համար միանգամայն անբավարար է նկատվում արդեն 1866 թ., երբ Գ. Ռադդեն հարուստ նյութերով վերադառնում է Թալիշում (Լենքորանի գավառում) իրականացրած գիտարշավից[14]: Նույն թվականի հունիսին հաստատվում են թանգարանի ծրագրերը, նոր հաստիքները. դրանով իսկ հաստատությունը դառնում է անկախ, ինքնուրույն մարմին[15]: Գ. Ռադդեն էլ նշանակվում է թանգարանի տնօրեն[16]:

**Թանգարանի հանդիսավոր բացումը.** Գ. Ռադդեի ջանքերով վերաբացված հաստատության պաշտոնական բացման տարեթիվ է համարվում 1867 թ. հունվարի 1-ը[17]: Կառավարությունը հարգում է Ռադդեի միանգամայն հիմնավոր խնդրանքը և 1868 թ. մայիսին հաստատում է փոխարքայի պալատի դիմաց գտնվող իշխան Գագարինի անավարտ ու ճարտարապետ Զալցմա-

13 **N. N.**, նշվ. հոդվ., էջ 2: Ի դեպ, մեկ այլ հաղորդման համաձայն՝ 1865-ից թանգարանն ունեցել է 4 բաժին՝ ազգագրական, կենդանաբանական, բուսաբանական և երկրաբանական (“Кавказский календарь на 1867 г.”, Тифлис, 1866, с. 275).

14 **N. N.**, նշվ. հոդվ., էջ 2:

15 **А. Ж.**, Д-ръ Г. И. Радде.– “Кавказ”, 1899, № 105, с. 2.

16 **Кобяков Юр.**, Кавказский музей.– “Тифлисский листок”, 1908, № 214.

17 “Кавказский календарь на 1868 г.”, Тифлис, 1867, с. 449. Նաև՝ **Фирсов Андрей**, Кавказский музей.– “Кавказ”, 1903, № 84, с. 2. Նաև՝ **Кобяков Юр.**, նշվ. հոդվ.:

նի ավերված տների տեղում թանգարանի համար միահարկ հատուկ շենք կառուցելու նախագիծը: Նույն թվականի օգոստոսից էլ սկսվում են կառույցի շինարարական աշխատանքները, և ուղիղ մեկ տարի անց՝ 1869 թ. սեպտեմբերի 1-ին[18], այն ամբողջանում է (ի դեպ, շինության կառուցման համար կառավարությունը հատկացրել էր 26.000 ռուբլի)[19]:

Նույն թվականին Կովկասան թանգարանն իր ենթակայության տակ գտնվող հասարակական գրադարանի հետ դրվում է Կովկասի փոխարքայի իրավասության ներքո:

Թանգարանի նորակառույց շենքի հանդիսավոր բացումը տեղի է ունենում 1870 թ. սեպտեմբերի 1-ին: Շենքի վերատեսուչ է նշանակվում Ս. Ն. Տրուբեցկոյը[20]:

1872 թ. սկզբին Գ. Ռադդեն մեկնում է Մոսկվա՝ մասնակցելու մոսկովյան պոլիտեխնիկական ցուցահանդեսին, որտեղ ներկայացվում են նաև կովկասյան բաժնի հավաքածուն՝ տնայնագործական իրեր (հիմնականում՝ զորգեր), եկեղեցիների և ճարտարապետական այլ հուշարձանների լուսանկարներ (ի դեպ, ցուցահանդեսի փակումից հետո իրերը հանձնվում են Կովկասյան թանգարանին)[21]:

Գ. Ռադդեի գլխավորությամբ իրականացվող ամենամյա գիտարշավներից հետո այնքան առատ նյութեր էին թանգարան բերվում, որ 1878 թ. անհրաժեշտություն է զգացվում դրա միահարկ շենքը վերափոխել երկհարկանիի: Այս առավել սուր է դրվում 1879 թ., երբ Հնագիտական ընկերությունը թանգարանին է փոխանցում մեծաքիվ հավաքածուներ: Նույն՝ 1879 թվականին, կառավարությունը 46.000 ռուբլի է փոխանցում թանգարանի շենքը վերակառուցելու նպատակով (ճարտ՝ Բիլֆելդ): Եվս 5.000 ռուբ. հատկացվում է շենքի ներքին հարդարանքի, մասնավորապես՝ որմերը ներքուստ նկարազարդելու համար (որմնանկարիչ՝ Ֆրանց Զիմմ)[22]: Թանգարանի շենքի վերակառուցման աշխատանքներն ավարտվում են նախատեսված ժամկետում. հանդիսավոր բացումը կատարվում է 1881 թ. սեպտեմբերի 9-ին:



*Կովկասյան թանգարանի ստեղծման ջատագով, հովանավոր և նվիրատու փոխարքա Միխայիլ Վորոնցով*



*Կովկասյան թանգարանի հիմնադիր տնօրեն Գուստավ Ռադդե*

18 “Кавказский календарь на 1871 г.”, Тифлис, 1870, с. 374.
19 “Коллекции Кавказскаго музея”, т. VI, с. 81.
20 **N. N.**, նշվ. հոդվ., էջ 2:
21 “Коллекции Кавказскаго музея”, т. VI, с. 83-84.
22 Նույն տեղում, էջ 114-115:



*Կովկասյան թանգարանի քարտուղար Ա. Բերժեի հուշարձանը*



*Կովկասյան թանգարանի քարտուղար իշխան Ռ. Էրիստովը*

Կովկասյան թանգարանն ու նրան կից գտնվող հասարակական գրադարանը գործում են Ժողովրդական լուսավորության նախարարության իրավասության ներքո: 1884 թ. մայիսի 8-ին նախարարությունը հաստատում է թանգարանի ինչպես աշխատակազմի, այնպես էլ գիտական գործունեության համար դրամական հատկացումները: Այդ կարգն անփոփոխ գործում է մինչև թանգարանի հիմնադիր տնօրեն Գուստավ Ռադդեի մահը (1903 թ., մարտի 2):

Մեծ է եղել թանգարանի ազգագրական բաժնի համալրումը հատկապես 1889 թ., երբ Թիֆլիսում բացված գյուղատնտեսական ցուցահանդեսի ավարտից հետո բոլոր ցուցանմուշները փոխանցվել էին թանգարանին:

1899 թ. վերջին թանգարանում նախապատրաստական աշխատանքներ են կատարվել Փարիզի համաշխարհային ցուցահանդեսին մասնակցելու համար. այն կայացել է 1900 թ. ապրիլի 1-14-ը: Ցուցահանդեսի բացմանը ներկա են եղել նաև Ֆրանսիայի Հանրապետության նախագահը իշխան Տենիշևի և գաղտնի խորհրդական Պ. Սեմյոնովի ուղեկցությամբ[23]:

1900 թ. Փարիզի համաշխարհային ցուցահանդեսում Կովկասյան թանգարանին և տնօրեն՝ Գ. Ռադդեին շնորհվել են ոսկե մեդալներ[24]:

**Թանգարանի նկարագրությունը.** հակառակ ճակատային մասից շենքի ոչ մեծ լայնությանը՝ բակի կողմից կառույցը բավականաչափ ձգված ու ընդարձակ էր: 1903 թ. ականատեսը նշել է, որ 11 սրահներից բաղկացած երկհարկ շինության մուտքի առջև կանգնեցված էր հաստատության ստեղծման գործին մեծապես նպաստած Ա. Բերժեի (1828-1886) կիսանդրին[25]: Ծանրության պատճառով թանգարանի մուտքին հարող մասում զետեղվել էին նաև գերեզմանական բնույթի մի քանի հուշարձաններ (հայկական և արաբական): Թանգարանի սրահներում ցուցադրված նմուշները խմբավորված են եղել 5 բաժիններում՝ երկրաբանական, կենդանաբանական, ազգագրական, բուսաբանական և պատմական հնությունների: Նախասրահը զարդարում էր թանգարանին նվիրաբերված ծովանկարիչ Հ. Այվազովսկու «Պետերբուրգի տեսքը Տրոյիցյան կամրջից» նկարը[26]:

**Դրամական նվիրատվություններ.** Կովկասյան թանգարանը 1867-1903 թթ. ընթացքում դրամական եզակի նվիրատվությունն ստացել էր 1867 թ. տարեսկզբին (2.000 ռուբ.) Նախիջևանի գավառական ուսումնարանի տեսուչ, 1-ին կարգի վաճառական, պատվավոր քաղաքացի Ա. Ի.

---

23 "Отчетъ по Кавкавзскому музею и Тифлисской публичной библиотеке за 1900 г.", Тифлис, 1901, с. 4.

24 Նույն տեղում, էջ 5: Նաև՝ **Кобяков Юр.**, նշվ. հոդվ.:

25 **Фирсов Андрей**, նշվ. հոդվ.:

26 Նույն տեղում:

27 "Кавказский календарь на 1868 г.", с. 450. Նաև՝ **N. N.**, նշվ հոդվ., էջ 2:



*Կովկասյան թանգարանի շենքը նախկին Գոլովինսկի, այժմ՝ Ռուսթավելու պողոտայի վրա. քաղխորհրդի որոշմամբ քանդվել է 1930-ական թվականներին և տեղում կառուցվել է Վրաստանի պատմության պետական թանգարանի շենքը*

Սարգսյանցից[27]:

**Նվիրատվություններ.** 1852 թ. Կովկասի փոխարքա Մ. Վորոնցովը ապագա թանգարանի համար կատարում է առաջին ներդրումը՝ նվիրելով կովկասյան ալպյան բույսերի հավաքածուն[28]: Նույն թվականին նվիրատուների թվում հիշվում են նաև Վ. Ա. Սոլլոգուբը, Ա. Բ. Իվանիցկին, Մ. Ս. Վորոնցովը, Ա. Ն. Բեկետովը:

1854 թ. իշխան Սոլլոգուբը թանգարանին նվիրել է պերճանքի առարկաների, իշխան Մ. Վորոնցովը՝ Կերչենսկի հնությունների թանկարժեք հավաքածուն[29]:

1856 թ. բարոն Ի. Ա. Վրևսկին թանգարանին նվիրել է Չեչնիայի Վալերիկ գետի վերին հոսանքի շրջանից, գեներալ Վ. Ա. Բեհբուտովը՝ Լաբա գետի շրջակայքից հայտնաբերված հնությունների հավաքածուները, Ե. Դ. Մակինցևը՝ պարսկական թանկարժեք իրեր[30]:

1857 թ. թանգարանին նվիրել են Ստավրոպոլի մոտ վայր ընկած ասուպը[31]:

1891-1892 թթ. Ախթալայի պղնձե հանքերի նախկին կառավարիչ Ն. Մորգանը թանգարանին է նվիրել 575 քարատեսակի 4000 նմուշ[32]:

**Թանգարանի այցելուները.** 1867 թ. մայիսի 15-ից հոկտեմբեր ընկած ժամանակահատվածում թանգարանն ունեցել է 2000 այցելու, իսկ հոկտեմբերի 1-ից նոյեմբերի 15-ը՝ ևս 2000 այցելու[33]: 1876 թ. ունեցել է 3671 այցելու[34], 1896 թ.՝ 9056 այցելու[35], 1900-ին՝ 9152 այցելու[36]:

**Թանգարանի վարչակազմը.** 1853 թ. հունվարի 27-ին ընտրվում է թանգարանի տնօրինությունը հետևյալ կազմով. նախագահ՝ Ե. Ս. Անդրեևսկին (նույն թվականի դեկտեմբերի 16-ի որոշ-

28 "Коллекции Кавказскаго музея", т. VI, с. 77.
29 Նույն տեղում:
30 Նույն տեղում:
31 Նույն տեղում:
32 "Отчетъ по Кавказскому музею и Тифлисской публичной библиотеке за 1893", Тифлис, 1893, с. 17.
33 "Кавказский календарь на 1868 г.", с. 449. Նաև՝ "Кавказский календарь на 1878 г.", Тифлис, 1877, с. 281.
34 **Жордания Г.**, նշվ. աշխ., էջ 152-153:
35 "Отчетъ по Кавказвскому музею и Тифлисской публичной библиотеке за 1896 г.", Тифлис, 1897, с.12.
36 "Отчетъ по Кавказскому музею и Тифлисской публичной библиотеке за 1900 г.", с. 9.




*Տեսարաններ Կովկասյան թանգարանի բակից*

մամբ նա ազատվում է աշխատանքից, փոխարենը նշանակվում է Ա. Պ. Նիկոլային), տնօրեններ՝ Վ. Ա. Սոլոգուբը և Կ. Լ. Չերմակը, քարտուղար՝ Գ. Ա. Տոկարևը (վախճանվել է 1854 թ.)[37]: 1853 թ. ապրիլին տնօրինության առաջարկով հրավիրված ընդհանուր ժողովը որոշում է Ֆ. Բայերնին տարեկան 300 ռուբ. աշխատավարձով նշանակել թանգարանի վերահսկիչի պաշտոնում[38] (վարել է մինչև 1863 թ.):

1855 թ. փետրվարի 15-ին թանգարանի քարտուղար է նշանակվում Ա. Պ. Բերժեն (1828-1886), որը պաշտոնավարում է մինչև 1860 թ. մարտի 23-ը[39]: Ի դեպ, 1855 թ. ապրիլից օգոստոս նրան փոխարինել է Ռ. Դ. Էրիսթովը, որը ոչ միայն դասակարգել է ազգագրական և պատմական ցուցանմուշները, այլև կազմել թանգարանի իրերի առաջին գրացուցակը[40]:

1855 թ. ապրիլի 14-ին Թիֆլիսից մեկնելու պատճառով թանգարանի ազգագրության բաժնի տնօրենի պաշտոնից ազատվում է Վ. Սոլլոգուբը: Նրա փոխարեն սեպտեմբերի 14-ին նշանակվում է Ի. Ա. Բարթոլոմեյը[41], որը պաշտոնավարել է առնվազն մինչև 1857 թ.[42]:

1860 թ. մարտի 23-ին թանգարանի քարտուղար է նշանակվում Պ. Ռիսը, որի մահից հետո՝ 1861 թ. գարնանը, պաշտոնավարում է Դ. Ի. Կովալենսկին[43]:

1866-1903 թթ. թանգարանի տնօրենն էր Գ. Ռադդեն:

1915 թ. թանգարանի ղեկավար անձնակազմը բաղկացած է եղել հետևյալ անձերից՝ գնդապետ Ալ. Ն. Կազնակով (տնօրեն), պետխորհրդական Յու. Ն. Վորոնով (ավագ պահապան) Ն. Ա. Սմիռնով, Ս. Վ. Տեր-Ավետիսյան (վարիչ), Ե. Վ. Պֆիցենմայեր (կրտսեր պահապան), Ր. Հ. Շմիդտ (գրադարանավար)[44]:

**Գիտարշավներ.** Կովկասյան թանգարանը իրավամբ կարելի էր գիտական լիարժեք հաստատություն համարել, քանի որ, բացի թանգարանային արժեք ներկայացնող հավաքածուների պատշաճ պահպանությունից ու ցուցադրումից, հաստատությունը պարբերաբար ձեռնարկում էր գիտահետազոտական արշավներ:

1859 թ. Ֆ. Բայերնը թանգարանի հանձնարարականով հետազոտական աշխատանքներ է իրականացնում Նոր Բայազետի, Երևանի, Էջմիածնի նահանգներում, Օրդուբադի գավառում, Կուրի ստորին հոսանքի շրջակայքում, ինչպես նաև Իգդիրից ոչ հեռու՝ Արարատի ստորոտի մոտ, հայտնաբերում է սեպագիր արձանագրություն[45]:

1866 թ. Ռադդեն մեկնում է Թալիշ (Լենքորանի գավառ). երթուղին հետևյալն էր. 1866 թ.

---

37 **Жордания Г.**, նշվ. աշխ., էջ 122, 123:
38 **N. N.**, նշվ հոդվ., էջ 2:
39 **Жордания Г.**, նշվ. աշխ., էջ 123:
40 Նույն տեղում., էջ 134, 144:
41 Նույն տեղում, էջ 129, 142:
42 **Жордания Г.**, նշվ. աշխ., էջ 129:
43 Նույն տեղում, էջ 144:
44 “Кавказский календарь на 1916 г.”, Тифлис, 1915, с. 257-258.
45 **Жордания Г.**, նշվ. աշխ., էջ 152-153:

օգոստոսի 4-ին Ախալցխայից Զատիկ լճի հովիտով մինչև Սուֆլիս գյուղ, ապա՝ Պամաճ գյուղ, Արտահան (օգոստոսի 8), Կարս գետի վտակ Բերդիկի հովտով Կարս (օգոստոսի 9), Չըլդր լիճ (օգոստոսի 13), Սուլդա գյուղ, Ախալքալաք, Ցխիս-ջվարի լեռնանցքով Բորժոմ[46]:

1867 թ. Գ. Ռադդեի գլխավորությամբ թանգարանն իրականացրել էր ուղևորություն դեպի Արևմտյան Հայաստանի Արտահանի և Կարսի շրջաններ[47]:

1868 թ. երկրաբաններ Ծուլուկիձեն, Խալաթյանցը և Արխիպովը հետազոտել են Նախիջևանի գավառը և Երևանի նահանգը՝ թանգարանը համալրելով 375 նոր գտածոներով[48]:

1868 թ. նոյեմբերին Գ. Ռադդեն իրականացրել է կարճատև ճամփորդություն դեպի Կազբեկ լեռ՝ թանգարանի համար քարայծեր և լեռնային հնդկահավեր ձեռք բերելու նպատակով[49]:

1868-1869 թթ. բեզոարյան այծեր և վայրի ոչխարներ ձեռք բերելու նպատակով արշավախումբ է մեկնում Արարատ լեռան շրջանը[50]:

Նույն ժամանակաշրջանում երկրաբաններ Ծուլուկիձեն, Խալաթյանցը և Արխիպովը շարունակում են հետազոտական աշխատանքներ իրականացնել Դարալագյազի շրջանում և Զանգեզուրի գավառում՝ թանգարանը հարստացնելով շուրջ 598 գտածոներով[51]:

1870 թ. Գ. Ռադդեն և Գ. Սիվերսը հետազոտել են Լենքորանի գավառը և Կասպից ծովի արևելյան ափը՝ Կրասնովոդսկի մերձակայքը[52]:

Նույն թվականին երկրաբաններ Ծուլուկիձեն, Արխիպովը ու Կրաֆտը հետազոտական աշխատանքներ են իրականացրել Բաքվի նահանգում և թանգարանին հանձնել կավճի ու եր-

46 “Коллекции Кавказкаго музея”, т. VI, с. 80-81.

47 “Краткий обзор путешествия Г. И. Радде в турецкую Армению в 1867 году”.— “Кавказ”, 1868, № 71, էջ 3-4: Տե՛ս նաև՝ “Краткий очерк истории развития Кавказского музея в первые 25 лет существования с 1-го января 1867 по 1-го января 1892 года”, составитель **д-р Г. Радде**, Тифлис, 1891, с. 54.

48 “Краткий путеводитель по Кавказскому музеума”, составитель **Г. И. Радде**, Тифлис, 1881, с. 3; 1895, с. 9; 1903, с. 7.

49 “Коллекции Кавказкаго музея”, т. VI, с. 81.

50 “Краткий очерк истории развития Кавказского музея в первые 25 лет...”, с. 54. Նաև՝ “Коллекции Кавказкаго музея”, т. VI, с. 81.

51 “Краткий путеводитель по Кавказскому музею, составитель **Г. И. Радде**, Тифлис, 1881, с. 3; 1885, с. 4; 1895, с. 9-10; 1903, с. 7.

52 “Коллекции Кавказкаго музея”, т. VI, с. 81-82.

53 “Краткий путеводитель по Кавказскаго музеума”, 1881, с. 4.






*Ուվարով ամուսինները և Կովկասյան թանգարանի հիմնադիր տնօրեն Գուստավ Ռադդեի հուշարձանը*





*Կովկասյան թանգարանի կենդանաբանության նվիրված սրահները*

րորդական նստվածքների ժամանակաշրջանի քարամնացուկներ[53]:

1871 թ. մայիս-սեպտեմբեր ամիսներին Գ. Ռադդեի և Գ. Սիվերսի ղեկավարությամբ թանգարանի արշավախումբը հետազոտական աշխատանքներ է իրականացնում Արաքս գետի միջին հոսանքի շրջանում, Երևանում, Նախիջևանում՝ մինչև Բիչանագ, Մեղրիի հովտում, Կապուտջուղ լեռան վրա (հունիսի 15), Արցախ-Սյունիքում, Ղարաբաղի լեռնաշղթայով Դարալագյազ (Վայոց Ձոր), Իստի-սուի հանքային տաք աղբյուրները, Նոր Բայազետ (Գավառ), Չիբուխլու (Ծովագյուղ), Դարաչիչակ (Ծաղկաձոր), ապա բարձրանում են Արագածի գագաթը (հուլիս), այնուհետև Էջմիածին, Եփրատի ձախափին՝ Ուչ-քիլիսա վանքը, օգոստոսին՝ Մեծ և Փոքր Մասիսները (առաջինը մինչև 14.500 ֆուտ բարձրությունը, իսկ երկրորդը՝ մինչև գագաթը)[54]:

1874 թ. թանգարանը Գ. Ռադդեի և Գ. Սիվերսի գլխավորությամբ արշավախումբ էր ուղարկել Բարձր Հայք՝ մինչև Էրզրում և Բյուրակնի (Բինգյոլ) լեռները[55]:

1875 թ. Բարձր Հայք էր մեկնել մի այլ արշավախումբ, որի կազմում եղել են Գ. Սիվերսը, Օ. Շնեյդերը, Մուրավիցը, Ֆիկսեն և դեսպան Բրյունինգը[56]:

Սցխեթից ոչ հեռու՝ Արագվա գետի աջ ափին՝ Սամտավրո կուսանաց վանքի մոտ ճանապարհ բացելու ժամանակ հայտնաբերվել է դամբարանադաշտ, որտեղ 1876-ից պեղումներ է իրականացրել Ֆ. Բայերնը՝ հետազոտելով՝ շուրջ 300 դամբարան: Հայտնաբերված հնագիտական գտածոների զգալի մասը (բրոնզե և երկաթե իրեր, դրամներ, պերճանքի առարկաներ) փոխա-

54 "Краткий очерк истории развития Кавказского музея в первые 25 лет...", с. 54. Նաև՝ "Отчетъ по Кавказскому музею и Тифлиской публичной библиотеке за 1897 и 1898 гг.", Тифлис, 1898, с. 18-19. "Коллекции Кавказскаго музея", т. VI, с. 82-83.

55 "Краткий очерк истории развития Кавказского музея в первые 25 лет...", с. 55. Նաև՝ "Коллекции Кавказского музея", обработанная совместно съ учеными специалистами и изданныя Г. И. Радде, т. V, Тифлис, 1902, с. 85-92.

56 "Краткий очерк истории развития Кавказского музея в первые 25 лет...", с. 55. Նաև՝ **Ղարիբջանյան Ս.**, Գուստավ Ռադդե.– «Ավարայր», 1997, № 2, էջ 26:

57 "Коллекции Кавказского музея", с. 62-68.





*Կովկասյան թանգարանի կենդանաբանությանը նվիրված սրահները*

դրվել և պահվել են Կովկասյան թանգարանում[57]:

Մցխեթի մոտ հայտնաբերվել է նաև հունարեն արձանագրությամբ սալ:

1877 թ. հետազոտվել էր Կուրի ստորին հովիտը:

1879 թ. նոյեմբերի 1-ին Գ. Ռադդեն մեկնել է Լենքորան. ուսումնասիրել է Կուրի աջափնյա հատվածը, Աղստաֆան, Ջեգամից Գետաբեկ, Քոչկար լեռը, Կեպաս և Մռավ սարերը, Սլավյանկա գյուղը, Շամքորի հովիտը, Գանձակը, Մինգեչաուրը, Կուրի ձախ ափը[58]:

1885 թ. Գ. Ռադդեի գլխավորությամբ հետազոտվել են Նուխիից (Շաքի) մինչև Շահդաղ ընկած հատվածը, Սամուր գետի ակունքի շրջանը, Դուլտիդաղն ու Բոգոսը[59]:

1890 թ. Գ. Ռադդեն հետազոտական աշխատանքներ է իրականացրել Ղարաբաղի տարածքում[60]:

1896 թ. հունիսի 21-ից օգոստոսի 11-ը թանգարանի վերահսկիչ Քյոնիգը հետազոտել է Արաքսի վերին հոսանքի շրջանը[61]:

**Թանգարանի նյութերի համալրումը Հայաստանի հնավայրերի գտածոներով.** 1857 թ. թանգարանի նյութերը համալրվում են Երևանի նահանգից հայտնաբերված 349 արծաթե հին դրամներով[62]:

1859 թ. Ֆ. Բայերնը հնագիտական գտածոներ, ինչպես նաև մի օրորոց (Արարատից էր բերված) է հանձնել թանգարանին[63]: Նյութերի հիմնական մասը բերված էր «Ռեդկին-ճամբար» (“Редкинъ-лагерь”) հնավայրից, որը գտնվում էր Աղստև գետի հովտում՝ Դիլիջանի մերձա-

58 “Коллекции Кавказскаго музея”, т. VI, с. 104.
59 “Краткий очерк истории развития Кавказского музея в первые 25 лет...”, с. 55. Նաև՝ **Ղարիբջանյան Ս.**, նշվ. հոդվ., էջ 26:
60 **Ղարիբջանյան Ս.**, նշվ. հոդվ., էջ 27:
61 “Отчетъ по Кавказскому музею и Тифлиской публичной библиотеке за 1896 г.”, Тифлис, 1897, с. 8.
62 **Жордания Г.**, նշվ. աշխ., էջ 129:
63 Նույն տեղում, էջ 153:
64 “Краткий путеводитель по Кавказскому музею”, составитель Г. И. Радде, Тифлис, 1885, с. 76; 1895, с. 80-81; 1903, с. 50.



*Կովկասյան թանգարանի կենդանաբանությանը նվիրված սրահները*

կայքում[64]: Նույն թվականին Ֆ. Բայերնը հետազոտել է նաև Դիլիջանի դամբարանից ոչ հեռու՝ լեռներում գտնող «Գոմեշ» անվամբ քարայրը. կավե գտածոն հանձնվել է թանգարան[65]:

1871 թ. հնագետ Ա. Երիցյանցի ջանքերով թանգարանին են հանձնվել Լոռուց հայտնաբերված մի շարք գտածոներ[66]:

1874 թ. Գ. Ռադդեի անձնական ծախսով Հին Ջուղայից գնվել և թանգարան են փոխադրվել մոտ 10 խաչքարեր ու տապանաքարեր[67]: Ռադդեն Թիֆլիս է փոխադրել նաև Սևանա լճափից գտնված մի սեպագիր արձանագրություն[68]: Կարսի մարզի չերքեզաքնակ Վերին Սարիղամիշ գյուղի մոտից գտնված մեկ սեպագիր արձանագրություն էլ Թիֆլիս է փոխադրել Ա. Երիցյանը[69]:

1880 թ. թանգարանին հնագիտական գտածոներ են հանձնվել Ալեքսանդրապոլից[70]:

Գեներալ-լեյտենանտ Վ. Ա. Կոմարովի ջանքերով թանգարանին հանձնվել են Սարիղամիշից հայտնաբերված սեպագիր արձանագրությունները[71]:

Գ. Ռադդեի ջանքերով թանգարան են հասցվել հնություններ Կողբից և Նախիջևանից[72]:

Լունդեկվիստը թանգարանին է հանձնել Կիլիկյան Տավրոսից հայտնաբերված գտածոներ[73]:

Արծրունին թանգարանին է փոխանցել Նոր-Բայազետից գտնված սեպագիր արձանագրությունը, իսկ Վալուևը՝ նյութեր Օլթիից[74]:

1879 թ. Ա. Ուվարովը, Պ. Ուվարովան և Ա. Երիցյանը պեղել են Արմավիրի տարածքից 3 դամ-

---

65 “Коллекции Кавказского музея”, т. V, с. 61-62.
66 “Краткий очерк истории развития Кавказского музея в первые 25 лет...”, с. 20. Նաև՝ “Краткий путеводитель по Кавказскому музею”, составитель Г. И. Радде, Тифлис, 1881, с. 54; 1895, с. 81.
67 “Краткий очерк истории развития Кавказского музея в первые 25 лет...”, с. 22.
68 **Համբո**, Հինգերորդ հնագիտական ժողովը Թիֆլիսում.– «Փորձ», 1881, № 1, էջ 89:
69 Նույն տեղում:
70 “Краткий очерк истории развития Кавказского музея в первые 25 лет...”, с. 20.
71 Նույն տեղում:
72 Նույն տեղում:
73 Նույն տեղում:
74 Նույն տեղում, էջ 21:
75 “Коллекции Кавказского музея”, т. V, . 128-130.



*Կովկասյան թանգարանի կենդանաբանությանը նվիրված սրահը*

բարան և հնագիտական 53 գտածոները հանձնել թանգարանին[75]:

1880 թ. Ա. Ուվարովը Աշտարակ և Օշական գյուղերի միջև՝ «Արևի տափաստան» կոչվող տարածքում պեղել է 10 դամբարան, որոնցից միայն մեկի գտածոներն են փոխադրվել և պահպանվել Կովկասյան թանգարանում[76]:

1892-1894 թթ. Ելիզավետպոլի արական գիմնազիայի ուսուցիչ Է. Ռյոսլերը պեղումներ է իրականացրել Շուշիի (Ասկերանի շրջ., գ. Խոջալու) ու Ջվանշիրի գավառներում (Մարտակերտի շրջ., գ. Առաջաձոր). հայտնաբերված հնագիտական 50 միավոր գտածոները հանձնել են թանգարան[77]:

1896 թ. գնդապետ Պ. Վ. Չարկովսկին առաջինն է, որ պեղումներ է կատարել Երևանի խանության Թազաքենդի (Կարմիր բերդը՝ Կոտայքի մարզի Նաիրիի ենթաշրջանի Զովունի գյուղի մոտ) միջին բրոնզի և վաղ երկաթի դարաշրջանների մի քանի դամբարանները և հնագիտական 65 միավոր գտածո հանձնել թանգարանին[78]:

Եղիազարյանցը թանգարանին է հանձնել Երևանի նահանգի Շոռ գյուղից հայտնաբերած հնագիտական 3[79], Հովակիմյանցը՝ Երևանի նահանգից հայտնաբերած 15[80], իսկ Շուլցը՝ Ելիզավետպոլի նահանգից հայտնաբերած բրոնզե 6 գտածոներ[81]:

Թանգարանին են հանձնվել նաև Աննենֆելդ գյուղից (Շամխորի շրջան) հայտնաբերված պղնձե և բրոնզե իրեր[82]:

Խարիտոնովը Զագլիկ (Փիր) գյուղի (Դաշկեսանի շրջան) շիրի հանքերը մշակելու ժամանակ

76 Նույն տեղում, էջ 132-133:
77 “Коллекции Кавказского музея”, т. V, с. 113-117.
78 Նույն տեղում, էջ 119-122:
79 Նույն տեղում, էջ 123:
80 Նույն տեղում, էջ 123-124:
81 Նույն տեղում, էջ 123-125:
82 Նույն տեղում, էջ 125:
83 Նույն տեղում, էջ 126:



*Դիլիջանի «Ռեդկին-ճամբար» հնավայրից հայտնաբերված հնագիտական իրերից*

հայտնաբերված հնագիտական գտածոները հանձնել է Կովկասյան թանգարանին[83]:

Կովկասյան թանգարանին են հանձնվել Հայաստանի տարբեր հնավայրերում Ն. Մառի իրականացրած պեղումների արդյունքում հայտնաբերված գտածոները (ցավոք, նշված չեն հնավայրերի անունները)[84]:

ԺԹ դարավերջին Կարսի մարզի Կաղզվանի գավառի (օկրուգի) Մեջիքլի գյուղից 5 վերստ հեռավորության վրա՝ Սողանլու լեռնաշղթայի արևելյան լանջին՝ Սարիղամիշից Քարաքուրդ տանող ճանապարհի շինարարության ժամանակ հայտնաբերվել է դամբարան, որի հնագիտական աղքատիկ նյութերն ինժեներ Ջեզեմանը փոխանցել է թանգարան[85]:

Տեկոր գյուղում Պոլյակովի իրականացրած պեղումների արդյունքում հայտնաբերված գտածոները հանձնվել են թանգարանին[86]:

1893 թ. հնագետ Բելքին հաջողվում է վերծանել թանգարանում պահվող Սարիղամիշից բերված սեպագիր արձանագրությունը[87]:

1897 թ. Կայսերական հնագիտական հանձնաժողովը թանգարանին է նվիրել Հայաստանի տարածքում հայտնաբերված հնագիտական իրեր, իսկ Ֆ. Կավրայսկին՝ Սևանա և Չըլդր լճերի առափնյա քարերի նմուշներ, Ա. Շելկովնիկովը՝ Ջվանշիրի գավառից հնագիտական գտածոներ, Կարսի երկաթուղագծի կառուցման աշխատանքների պատասխանատուից՝ Խրամ գետի մոտ՝ Էմիր գյուղի մերձակայքում հայտնաբերված սուրը[88]:

1905-1906 թթ. Սևանա լճի հարավային ափերի մոտ կատարած պեղումների արդյունքում

84 Նույն տեղում, էջ 127:
85 Նույն տեղում, էջ 131:
86 Նույն տեղում:
87 "Отчетъ по Кавказскому музею и Тифлиской публичной библиотеке за 1893 г.", с. 19.
88 "Отчетъ по Кавказскому музею и Тифлиской публичной библиотеке за 1897 и 1898 гг.", с. 20-21.



*Կովկասյան թանգարանի ազգագրական նյութերին նվիրված սրահներից մեկը*

հայտնաբերված մի շարք բրոնզե իրեր, որոնք համարվել էին ուրարտական մշակույթի նմուշներ, Ե. Լալայանը հանձնել էր Կովկասյան թանգարանին[89]:

1914 թ. կապիտան Պ. Ֆ. Պետրովը Սուրմալու գավառի Մալաքլու գյուղի մոտ (Իգդիրից 8 վերստ հեռու) պեղել էր 13 դամբարան և թանգարան հանձնել հայտնաբերած հնագիտական 159 միավոր գտածոները[90]:

Նույն թվականին թանգարանի հանձնարարականով նկարիչ Ն. Վ. Կելչևսկին կազմել էր Արաքսի ձախ ափին` Ջուղայից արևմուտք` հին կամրջի դիմաց գտնվող «Գյուլիստան» կոչվող հնավայրի հատակագիծն ու լուսանկարել այն: Թանգարանին էր հանձնվել 13 լուսանկարների ապակյա նեգատիվները[91]:

Նույն թվականին Ս. Տեր-Ավետիսյանը պեղում է Չեգամի (Ջակամ) մոտ գտնվող «Ղարաուլ-դաղ» բլրի դամբարանները և բացահայտում 3 կարգի թաղումներ: Գտածոները փոխադրվում են թանգարան[92]: Ս. Տեր-Ավետիսյանը պեղում է նաև Օրդուբադի տեղամասի «Խարաբա-Գիլան» անվամբ հայտնի հնավայրը, որը, ինչպես պարզվում է, քաղաքատեղի էր[93]:

Նույն թվականի աշնանը Ս. Տեր-Ավետիսյանը նկարիչ Ն. Վ. Կելչևսկու հետ ուսումնասիրում է Չըլդըր գավառի Դաշ-քյորփի գյուղի մոտ գտնվող սեպագիր արձանագրությունը: Պատրաստ-

89 **Казнаков А. Н.**, Заметка о древних бронзах из Гокчинских могильников, “Известия Кавказского музея”, том XI, вып. 1-2, Тифлис, 1917, с. 25. Նաև` **Մելիք-Փաշայան Կ.**, Երվանդ Լալայան.– «Պատմա-բանասիրական հանդես», № 3, էջ 37:

90 “Отчет по Кавказскому музею за 1914 год”, Тифлис, 1917, с. 21, 23. Տե՛ս նաև **Գիտակ**, Զագեամի հնութիւնները.– «Մշակ», 1914, № 123, էջ 4:

91 “Отчет по Кавказскому музею за 1914 год”, с. 21, 23.

92 Նույն տեղում, էջ 21:

93 Նույն տեղում, էջ 22:

94 Նույն տեղում:





*Կովկասյան թանգարանի ազգագրական նյութերին նվիրված սրահները*





*Կովկասյան թանգարանի ազգագրական նյութերին նվիրված սրահները*



*Յնագետ Ալեքսանդր Երիցյանը*



*Կովկասյան թանգարանի հնագիտական բաժնի վերջին հայազգի ավագ պահապան Սմբատ Տեր-Ավետիսյանը*

վում է վերջինիս էստամպն ու լուսանկարը[94]:

Նույն ժամանակ Ա. Վրույրը թանգարանին է հանձնում Անիում կատարած 50 լուսանկարների ապակե նեգատիվները[95]:

1915 թ. նոյեմբերի 15-ից մինչև հունվարի վերջը հնությունների ուսումնասիրության առաջադրանքով Վանի շրջան է մեկնել (Ջուլֆա-Խոյ-Սարայ-Վան երթուղով) թանգարանի ավագ վերահսկիչ Ս. Տեր-Ավետիսյանը[96]: Նրան ուղեկցել է նաև կաթողիկոսի պատվիրակը: Ճամփորդության ընթացքում Ս. Տեր-Ավետիսյանը հետազոտել է Վանի միջնաբերդը, Վարագի, Աղթամարի, Լիմի, Կտուցի վանքերը, հավաքել է շուրջ 1000 հայերեն և մի քանի տասնյակ արաբերեն, թուրքերեն ձեռագրեր, կատարել է բազմաթիվ հուշարձանների չափագրումներ և լուսանկարահանումներ[97]:

1916 թ. ամռանը ուսումնասիրություններ էին կատարվել Վանում: Մասնավորապես հետազոտվել էր Վանի բերդի պարիսպների ներսում գտնվող քարանձավը[98]:

1916 թ. Սմբատ Տեր-Ավետիսյանը Բիթլիսում հայտնաբերում է Մշո Առաքելոց վանքի դուռը և հանձնում թանգարանին[99]:

Թանգարանում են պահվել Ախալցխայից, Շամախիից և Շուշիից բերված պղնձե ամաններ, ինչպես նաև արծնապատ արծաթե իրեր Շուշիից, կնոջ կրծքազարդեր՝ Նուխիից, մետաքսե ջե-

95 Նույն տեղում, էջ 23:
96 Սմբատ Տեր-Ավետիսյանը թանգարանի հնագիտական բաժնի ավագ վերահսկիչ էր նշանակվել 1914 թ. օգոստոսի 1-ին այդ պաշտոնում փոխարինելով գիտությունների կայսերական ակադեմիայի անդամ Յու. Ն. Վորոնովին (“Отчет по Кавказскому музею за 1914 год”, Тифлис, 1917, с. 3):
97 “Кавказ”, 1916, № 62, էջ 3-4:
98 **Казнаков А. Н.**, Пещера с тайниками в Ванской цитадели.– “Известия Кавказского музея”, т. XI, вып. 1-2, Тифлис, 1917, с. 28-32.
99 **Тер-Аветисян С.**, Резная дверь 1134 г. из окрестностей гор. Муша.– “Известия Кавказского историко-археологического института”, Тифлис, 1925, с. 129-133.

ջիմների հարուստ ընտրանի՝ Ղարաբաղից, Երևանի մզկիթից՝ ջնարակած աղյուսներ:

Թանգարանի ֆոնդերը լրացվում և հարստացվում էին մեծ արագությամբ: Հայտնի է, որ եթե 1881 թ. թանգարանն ունեցել է 28.000 ցուցանմուշ, ապա 1908 թ. հավաքածուն կազմել է 180.000[100]:

**Թանգարանի գործունեությունը 1907-1919 թթ.** 1907 թ. թանգարանն այնքան էր հարստացել նոր նյութերով, որ արդեն զգացնել էր տալիս կառույցի անձկությունը և փոքրությունը: Նոր շենքի կառուցումը, սակայն, կյանքի չկոչվեց ֆինանսական միջոցներ չլինելու պատճառով: Կառույցի համար նախատեսվել էր թանգարանի շենքը վաճառել, ապա մատչելի գնով գնել նոր հողամաս, որտեղ հնարավոր կլիներ կառուցել ընդարձակ շինություն[101]:

1908 թ. թանգարանի տնօրենն էր Ալեքսանդր Նիկոլաևիչ Կազնակովը, օգնականը՝ Ռիխարդ Գ. Շմիդտը, վերահսկիչը՝ Արկադի Իվանովիչ Մոժնսկին[102]:

1919 թ. Կովկասյան թանգարանը վերանվանվել և ստացել է Վրաստանի պետական թանգարան անունը[103]:

**Թանգարանի ազգայնացումը և հայկական մշակութային արժեքների բռնագրավումը.** 1919 թ. հունվարին Վրաստանի կառավարությունը հայտարարում է Կովկասյան թանգարանն ազգայնացնելու մասին և, փաստորեն, բռնագրավում հավաքածուների 2/3-րդ մասը կազմող հայ մշակույթի բազմաբնույթ արժեքները: Կայացված որոշումն իրապես անօրինակ էր և պարզորոշ ներկայացնում էր մենշևիկյան Վրաստանի կառավարության զավթողական նկրտումները: Օգտվելով միայն հաստատության՝ Թիֆլիսում գտնվելու հանգամանքից, ազգայնացվում է մի թանգարան, որի պարունակության մեծ մասը որևէ առնչություն չուներ վրաց մշակույթի հետ և մանավանդ նյութերի մի զգալի մասն էլ պատերազմի պատճառով էր միայն ժամանակավորապես թանգարան փոխադրվել: Եղելության առթիվ խիստ ուշագրավ է թանգարանի ավագ վերահսկիչ՝ Սմբատ Տեր-Ավետիսյանի՝ 1919 թ. մարտի 1-ին Հայաստանի Հանրապետության արտաքին գործերի նախարար Ս. Տիգրանյանին հղած հետևյալ զեկուցագիրը.

### «Կովկասեան թանգարանը - մեր ազգային յիշատակարանների գրաւումը

Ա.

Ի նկատի ունենալով, որ հայ-վրացական խորհրդաժողովի քննութեան նիւթ պիտի դառնան ռուսական պետական այն հաստատութիւնները, որոնք ընդհանուր երկրային նշանակութիւն ունին ամբողջ Կովկասի համար, բայց գտնուելով Թիֆլիսում գրաւուել են վրաց կառավարութեան կողմից, անհրաժեշտ ենք համարում Ձեր ուշադրութիւնը հրաւիրել այդպիսի մի ընդհանուր նշանակութիւն ունեցող երկրային հաստատութեան վերայ, որը վրաց կառավարութիւնը ազգայնացնելով դրել է կորստեան ճանապարհի վերայ. խօսքս վերաբերում է Կովկասեան թանգարանին:

Կովկասեան թանգարանը Կովկասի միով գիտական հաստատութիւն էր, որ նպատակ ունէր ժողովելու և ուսումնասիրելու ամբողջ Կովկասի, և հարևան երկրների պատմութիւնը, ազգագրութիւնը, բուսական և կենդանական հարստութիւնները և հանքաբանութիւնը:

Թանգարանը հիմնուել է 1865 թ. մեծ իշխան Միխայիլ Նիկոլաևիչի ջանքերով և պահուել պետական և մասամբ Կովկասեան զեմովի տուրքերով: 1913 թ. թանգարանը դարձաւ գիտութեանց ճեմարանի ֆիլիալ բաժանմունքը և ընդլայնեց իր ծրագիրը ստանալով պետութիւնից նոր միջոցներ, կանոնադրութիւն և մասնագետների նոր շտատ, ընտրուած և հաստատուած գիտութեանց ճեմարանի կոնֆերենսիայի կողմից: Նոյն նպատակով Գոլովինսկի պրոսպեկտի վերայ պալա-

100 **Джавахишвили А. И.**, Краткий обзор прошлой и будущей деятельности Государственного Музея Грузии им. акад. С. Н. Джанашиа.– «ՀՍՍՌ ԳԱ Տեղեկագիր», 1950, № 8, с. 111.

101 **Кобяков Юр.**, նշվ. հոդվ.:

102 **Сатунин К.**, Деятельность этнографическаго отделения Кавказскаго музея.– “Кавказ”, 1908, № 96, с. 3. “Памятная книжка Эриванской губернии за 1908 г.”, под редакцией В. Е. Васильева, Эривань, 1908, с. 13.

103 **Джавахишвили А. И.**, նշվ. հոդվ., էջ 111.

տի դիմաց շինուեց մի հսկայական շինութիւն:

Թանգարանը յիսուն տարուայ իւր գոյութեան ընթացքում ժողովել և պահպանել է գիտութեան համար բազմաթիւ ժողովածուներ, որոնցից շատերը Կովկասի բազմալեզու ժողովրդների ազգային անկապտելի սեփականութիւնն են կազմում իբրեւ արդիւնք նրա բազմադարեան գոյութեան և կուլտուրայի, որովհետև Կովկասի բոլոր ծայրերից` Կուբանից, Թերեքի շրջանից, Ադրբեջանից, Հայաստանից, Վրաստանից, Սև ծովի ափերից, Պարսկաստանից և վերջապես նախկին Տաճկական Հայաստանից այդտեղ են ժողոված վերոյիշեալ երկրների և ժողովուրդների ազգային պատմական ու ազգագրական յիշատակարանները:

Այդ յիշատակարանների մի ստուար մասը պատկանում է հայ ժողովրդին ու կազմում նրա դարաւոր գոյութեան սրբութիւն սրբոցը: Միայն այդ տեսակետից նայելով գործի վերայ Կովկասեան թանգարանը հարստացրել են իրենց նուէրներով, ժողովածուներով և մասնագիտական ուսումնասիրութիւններով շատ հայեր. առանձնապես յիշելու արժանի են. Ալէքսանդր Երիցեան (հնագետ), Բ. Շելկովնիկով (բնագետ), Ե. Լալայեան (ազգագրագետ և նուաստս իբրև պատմաբան-հնագէտ): Սոցա ենք պարտական, որ հնագիտական բաժնի երկու երրորդ մասը պատկանում է Հայաստանին:

Հնագիտական բաժինը աւելի հարստացաւ հայկական յիշատակարաններով, երբ 1914 թ. գիտութեանց ճեմարանի ընտրութեամբ ես հրաւիրուեցի նոյն բաժնի համար աւագ վերահսկիչի պաշտօնով: Ներկայ պատերազմի հենց սկզբից գիտութեանց ճեմարանի յանձնարարութեամբ ուսումնասիրութիւններ կատարելու նպատակով ճանապարհորդելով Տաճկական Հայաստանի նահանգները, կորստից ազատելու նպատակով ժամանակաւորապէս մեր շատ պատմական յիշատակարանները փոխադրեցի Կովկասեան թանգարանը իբրև ապահով տեղ ապագայում իրենց տեղերը դարձնելու մտքով: Այդ իրերից յիշատակութեան արժանի են.

1. Սեպագրերի հարուստ ժողովածու Վանի շրջանից:

2. Հայկական և հայագիտական մի ամբողջ գրադարան ժողոված իմ և իմ աջակից հայերի ջանքերով Էրզրումի շրջանում:

3. Եկեղեցական և պատմական իրեր Վանից և Տարօնից. սրանց թւում և Առաքելոց վանքի հռչակաւոր քանդակագործ դուռը, խլած տաճիկներից Բիթլիսում ու փոխադրած իմ սեփական միջոցներով:

Թանգարանի ազգագրական մասը բացի Կովկասի հայկական գաւառներից պարունակում է նիւթեր նաև Վանի, Բիթլիսի հայոց կեանքին և կենցաղին վերաբերեալ:

Թանգարանին կից է մի շատ հարուստ, միակը ամբողջ Կովկասում գրադարան, ուր հաւաքած են կովկասագիտութեան վերաբերեալ թանկագին, այժմ սպառուած հրատարակութիւններ: Սա միակ գրադարանն է, ուր կարելի է գտնել Կովկասում տպուած բոլոր հայերէն գրքերը:

Բուսաբանական ու կենդանաբանական բաժինները միանգամայն դրուած են գիտական լաւ հիմքերի վերայ:

Թէ գիտական և թէ նիւթական մեծ արժէք ունի դրամագիտական բաժինը:

## Բ.

Անցեալ տարուայ յունիսից Վրաց կառավարութիւնը սկսեց խառնուել թանգարանի ներքին գործերում: Մի ամիս առաջ էլ յայտարարեց, որ Կովկասեան թանգարանը ազգայինացնում է դարձնելով Վրաց ազգային թանգարան, որպիսի նպատակով Վրաց լուսաւորութեան նախարարութիւնը մշակում է մասնագետների նոր շտատ և կանոնադրութիւն: Հէնց նոյն ժամանակ պաշտօնից արձակեցին ինձ զրկելով դրամական վարձատրութիւնից և յետ չընտալով այն իրերը, որ իբրեւ աւանդ Հայաստանից ես փոխադրել էի Կովկասեան թանգարանը:

Այսպիսով կատարուեց մեր ազգային յիշատակարանների բռնի յափշտակութիւն և նուաստս, որ կեանքիս գնով պատերազմի ընթացքում հարստացրել էի այդ թանգարանը դուրս շպրտուեցի իբրև ոչ ցանկալի տարր: Այսպես վարուեցին նաև այն ռուս մասնագետների հետ, որոնք թանգարանը համարում են ոչ վրացական, այլ համակովկասեան երկրային էքստերիտորեալ հաստա-



*«Արմազի» թանգարանում հանգրվանած հայկական հավաքածուներից*

տութիւն:

Բողոքելով այդպիսի բռնի յափշտակութեան դէմ, առաջարկում եմ Վրաց կառավարութիւնից պահանջել.

1. Կամ թողնել թանգարանը անձեռնմխելի իւր նախկին կազմով ու շտատով, որ հաստատուած է ակադեմիայից և վերահսկողութիւնը յանձնել այդ հաստատութեան մէջ մաս ունեցող կառավարութիւններից նշանակած անձանց, համարելով թանգարանը էքստերիտորեալ երկրային գիտական հաստատութիւն, որի անդամահատելը ցանկալի չէ:

2. Եւ կամ բաժանել բոլոր գոյքը:

Վերջին դէպքում մեր կառավարութեան և Ձեր վերայ իբրև այդ կառավարութեան ներկայացուցիչների ընկնում է մի մեծ պարտականութիւն միջոցներ ձեռք առնել օր առաջ ազատելու մեր ազգային գոյքը յափշտակելուց և փոխադրել մի աւելի ապահով տեղ դուրս բերելով այն բոլորը, ինչ առնչութիւն ունի հայոց կեանքի հետ: Յետաձգել կամ ձգձգել այս խնդիրը կը նշանակի միջոց տալ ուրիշներին վատնելու մեր ազգային սեփականութիւնը, որի հետ մենք կապուած ենք դարերով, չէ՞ որ այդ իրերը մեր գոյութեան դոկումենտներն են:

Չը պէտք է մոռանալ, որ թանգարաններ կազմւում են տասնեակ տարիների յամառ ջանքերից



*«Արմազի» թանգարանում հանգրվանած հայկական հավաքածուներից*

յետոյ ու կլանում են հսկայական գումարներ, այնինչ՝ մենք Կովկասեան թանգարանում ունենք մեր կուլտուրան ներկայացնող այնպիսի ժողովածուներ և իրեր, որ ուրիշ տեղ ոչ մի գնով ձեռք բերել չի կարելի:

Կէս տարուայ փորձը ցոյց տուեց, որ Վրաց կառավարութիւնը անձեռնհաս է կառավարելու և պահպանելու այդպիսի մի գիտական հաստատութիւն և որ վրացի դիրեկտորի օրով փչացաւ տարիների ընթացքում ժողոված բնագիտական ժողովածուի մի մասը:

Ինձ յայտնի է նոյնպէս, որ թանգարանի իրաւական տէրը Ռուսական գիտութեանց ճեմարանը ոչ մի կերպ համաձայն չէ թանգարանի ազգայինացման, բայց տիրող քաղաքական դրութեան շնորհիւ հնարաւորութիւն չունի բողոքելու և պաշտպանելու թէ իրա, թէ իր կողմից ընտրած մասնագետների իրաւունքը: Այդ պարտականութիւնը ընկնում է Կովկասեան հասարակապետութիւնների վերայ:

Ես խնդրում եմ Ձեզ, պարոններ մի թոյլ տաք մեր աչքի առջև փորելու ամբողջ Կովկասի այդ միով բարձր գիտական հաստատութեան հիմքը: Չէ՞ որ ապագայ Հայաստանը չէ կարող ապրել առանց այդպիսի կուլտուրական հաստատութեան:

Ներկայ յայտարարութեամբ ես կամենում եմ կատարել իմ բարոյական պարտականութիւնը



*«Արմազի» թանգարանում հանգրվան գտած հայկական հավաքածուներից*

և դուրս գալ ապագայում անպատասխանատու ազգային գոյքի յափշտակութեան դէպքում:

Սմբատ Տեր-Աւետիսեան

Նախկին աւագ վերահսկիչ Կովկասեան թանգարանի:

Յ. Գ. Ներկայ գրութիւնը հրատարակելու դեպքում, ես խնդրում եմ գաղտնի պահել իմ ստորագրութիւնը ու նոյն մտքով փոփոխութիւն մտցնել նիւթի մէջ:

1919 թ. 1 մարտի Թիֆլիս»[104]:

Հիմք ընդունելով Ս. Տեր-Ավետիսյանի զեկուցագիրը՝ Հայաստանի Արտաքին գործերի նախարար Ս. Տիգրանյանը 1919 թ մարտի 25-ին Վրաստանի ԱԳ նախարարին հղել է հետևյալ գրությունը.

104 ՀԱԱ, ֆ. 207, ց. 1, գ. 28, թ. 9-10:



*«Արմազի» թանգարանում հանգրվանած հայկական հավաքածուներից*

“Министру Иностранных Дел Грузинской Республики

25 марта 1919 г.

№ 825.

Получены сведения, что Правительство Грузии постановило переименовать Кавказский Музей в Грузинский и принять его в свое обладание и распоряжение.

Кавказский Музей - одно из тех установлений, принадлежность и участь котораго не может подлежать одностороннему решению Грузинскаго Правительства. Неговоря о России, который в лице ея Правительства и Академии Наук несомненно должно принадлежать в этом вопросе первенствующее и решающее слово, с существованием Кавказскаго Музея у Республики Армении связаны слишком ценные интересы, чтобы можно было игнорировать голос ея Правительства при распоряжении означенным культурным научным учреждениям.

Правительство Армении хочет надеяться, что Правительство Грузинской Республики



*«Արմազի» թանգարան. Մարիամ Մելիք-Աղամալյանի բեկորված տապանաքարը (1997 թ., լուս. Սարգիս Դարչինյանի)*

примет все меры к ограничению неприкосновенности и сохранности Кавказскаго Музея со всем достоянием на прежних основаниях впредь до разрешения вопроса о новом положении Музея при участии как Российской Академии Наук, так и представительства Республики Армении.

Министр Иностранных Дел Республики Армении /подпись/ С. Тигранянъ
Генеральный секретарь /подпись/ А. Теръ-Акопянъ
Съ подлинным верно: Правитель Канцелярии”[105].

Թարգմ.

*«Վրաստանի Հանրապետության արտաքին գործոց նախարարին*

*25 մարտի 1919 թ.*

*№ 825*

*Ստացվել է տեղեկություն, որ Վրաստանի կառավարությունը որոշել է Կովկասյան թանգարանը վերանվանել Վրացական, և վերցնել իր տնօրինության և իրավասության ներքո:*

*Կովկասյան թանգարանն այն հաստատություններից է, որի պատկանելությունն ու նշանակությունը չի կարող ենթարկվել վրացական կառավարության միակողմանի որոշմանը: Չխոսելով Ռուսաստանի մասին, որին՝ ի դեմս իր կառավարության և գիտությունների ակադեմիայի, այս հարցում, անկասկած, պետք է վերապահվի առաջնային և վճռական խոսքը, Կովկասյան թանգարանի գոյության հետ Հայաստանի Հանրապետությունը կապված է չափազանց թանկ հետաքրքրություններով, որպեսզի հնարավոր լինի անտեսել նրա կառավարության ձայնը նշված գիտական հաստատության տնօրինման գործում:*

*Հայաստանի կառավարությունը ուզում է հուսալ, որ Վրաստանի Հանրապետության կառավարությունը ձեռք կառնի բոլոր միջոցները սահմանելու Կովկասյան թանգարանի անձեռնմխելիությունը, ձեռքբերումների պահպանումը նախկին հիմունքներով մինչև թանգարանի նոր կարգավիճակի հստակեցումը, ինչպես Ռուսաստանի գիտությունների ակադեմիայի, այնպես էլ Հայաստանի Հանրապետության ներկայացուցիչների մասնակցությամբ:*

*Հայաստանի Հանրապետության ԱԳ նախարար (ստորագրություն) Ս. Տիգրանյան*
*Գլխավոր քարտուղար (ստորագրություն) Ա. Տեր-Հակոբյան»:*

Ցավոք, քաղաքական լարված մթնոլորտում հայկական կողմի քայլերը նպատակին չեն հասնում, իսկ անկախ Հայաստանի իշխանություններին փոխարինած Խորհրդային Հայաստանի պատասխանատուները համակված «եղբայրական» զգացումներով, ընդհանրապես մոռացության տվեցին թանգարանում բռնագրավված ազգային հարստությունները հայրենիք վերադարձնելու խնդիրը:

**Թանգարանի գործունեությունը 1940-ական թվականներից հետո.** 1941 թ. Կովկասյան թանգարանն անցել է Վրաստանի Գիտությունների ակադեմիայի ենթակայության ներքո: Այդ ժամանակ թանգարանն արդեն բաղկացած էր 7 բաժնից (ձեռագիր մատյաններ, պատմական, հնագիտական, ազգագրական, երկրաբանական, բուսաբանական, կենդանաբանական) և ուներ 700.000 ցուցանմուշ[106]:

Որքան մեզ հայտնի է, խորհրդային տարիներին Կովկասյան թանգարանի հավաքածուները պահպանության նպատակով բաշխվել են երեք հաստատությունների միջև: Դրանք են՝ Վրաստանի Արվեստի պետական թանգարանը, որի նկուղում հանգրված է գոտել սեպագիր արձանագրությունների հավաքածուն, և Թբիլիսիի ձեռագրերի ինստիտուտը, որին բաժին է հասել Ս. Տեր-Ավետիսյանի ջանքերով Առաջին աշխարհամարտի տարիներին Արևմտահայաստանից հավաքված ձեռագրերը, իսկ միջնադարյան զանազան հուշակոթողներն ու արձանագրությունները փոխադրվել են Թբիլիսի-Մցխեթ ճանապարհին գտնվող «Արմազի» թանգարան:

Վերջինիս միահարկ ու անշուք շինությունը, որտեղ «պահպանվում» էին մեր բռնագրավված կոթողները, 1980-ական թվականների վերջերին և 1990-ականների սկզբներին գտնվում էր ծայ-

105 Նույն տեղում, p. 4:
106 **Джавахишвили А. И.**, նշվ. հոդվ., էջ 111:





*«Արմագի» թանգարանի կիսավեր վիճակը 1990-ական թվականների վերջերին*





*«Արմազի» թանգարանի կիսավեր վիճակը 1990-ական թվականների վերջերին*

ռահեղ քայքայված, մինչև իսկ վքարային վիճակում:

Մեր այցելությունների ժամանակ (1988-1992 թթ.) Թբիլիսիից հեռու մեկուսի վայրում գտնվող թանգարանի պահպանությունն իրականացնում էր շենքի հարևանությամբ սեփական տանը բնակվող պահակը: Վերջինիս հետ կայացած մեր հանդիպումից պարզվեց, որ նրա պարտականությունն ոչ այնքան թանգարանի պահպանությունն էր, որքան ազգությամբ հայ այցելուների մուտքը արգելելն ու խոչընդոտելը:

Թանգարանի հայկական նյութերի սրահում ներկայացված ցուցանմուշներն արդեն զուրկ էին բացատրագրերից. որոշ կոթողների կողերին կամ թիկունքին նշմարելի էին միայն ներկով գրված ինչ-ինչ թվեր:

Հայտնի է նաև, որ շինության տնական անխնամ վիճակի հետևանքով 1993-1994 թթ. ուղիղ ցուցանմուշների վրա փլուզվեց թանգարանի բետոնածածկ տանիքը: Կոտրատվեցին մի շարք արձանագրություններ և խաչքարեր, իսկ Մարիամ Մելիք-Աղամալյանի մարմարակերտ տապանաքարը բեկորների վերածվեց:

2004 թ. կիսավեր թանգարանի ներսում և բակում թափված կոթողների զգալի մասն անհետա-

ցած էր, իսկ մյուսները փլվածքների և աղբի մեջ էին:

Նկատի առնելով «Արմազի» թանգարանում հանգրվան գտած հայկական հուշակոթողների ոչնչացման ու կորստյան տխուր իրողությունը՝ ահազանգեր հնչեցվեցին հայկական մամուլում[107]:

Սակայն կոթողները Հայաստանի պատմության պետական թանգարանին վերադարձնելու վերաբերյալ բարձրացված հարցը, որն առկախ էր 1919 թ. ի վեր, լուծում կարող էր ստանալ միայն պետական միջամտության (առնվազն՝ ՀՀ մշակույթի նախարարության) շնորհիվ:

Ցավոք, ինչպես հայտնի է, ազգային տարագիր մշակութային ժառանգությունը հայրենիք վերադարձնելու ուղղությամբ ակնկալվող պետական միջամտությունը տեղի չունեցավ...

Հաջորդիվ ներկայացնում ենք երբեմնի Կովկասյան թանգարանից Թբիլիսի-Մցխեթ ճանապարհին գտնվող «Արմազի» և Վրաստանի արվեստի պետական թանգարաններ փոխադրված բոլոր այն հուշակոթողներին վերաբերող տվյալները, որոնք հնարավոր է եղել ի մի բերել տարիներ շարունակ կատարած փնտրտուքի արդյունքում:

107 **Կարապետյան Ս.**, Հայ մշակույթի նմուշները «Կովկասյան թանգարանում» և դրանց հետագա ճակատագիրը.– «Հայոց աշխարհ», 16.09.1997, № 66, էջ 8: Նույնի՝ Հուշարձանների բռնազաքթ դեպի անհայտություն, «Հայոց աշխարհ», 24.12.1997, № 136, էջ 1, 8: Նշված հոդվածները վերահրատարակվել են նաև Ս. Կարապետյանի «Վրաց պետական քաղաքականությունը և հայ մշակույթի հուշարձանները» (Երևան, 1998) աշխատության մեջ:



## ԽԱՉՔԱՐ ՀԻՆ ՋՈՒՂԱՅԻՑ

*Գույքահամար. հին՝ 183, նոր՝ 39:*

Խաչքար, չափերը՝ 186 x 60 x 18 սմ: Հին Ջուղայից 1874 թ. թանգարան է փոխադրել Գ. Ռադդեն: Վերնամասում կամարաշարի ներքո գտնվող պատկերաքանդակներից վեր ու վար մեկական տող, կենաց ծառի տակ՝ երկտող, վարդյակի չորս անկյուններում (տարեթիվն է՝ միատող) և ստորին մասում՝ հեծյալի քանդակի կողքին եռատող փորագրված է.

*Ատին, Մարիամ, Մարաց Յ(իսու)ս Ք(րիստո)ս: Մէլ(ի)ք Գա(ս)պ(ա)ր, Բ(ա)ղտ(ա)ր, Ք(ա)սպ(ա)ր, Տ(ա)ճ(ատ)ի | Ս(ուր)բ խաչս բարեխաւս է ի Ք(րիստո)ս հոգ(ու)ն Միրզումին, կ(ո)ղ(ա)կ(ի)ցն՝ Գուլիխասին: | Գրիգոր, վ(ա)ր|պետ Սարգ(ի)ս: | Թվ(ին) ՌԾԱ (1602): | խ(ա)չս յ(ի)շ(ա)տ(ա)կ է | Միրզումի|ն և կ(ո)ղ(ա)կց(ու)յ)ն:*

Հրատ. “Коллекции Кавказскаго музея”, обработанныя совместно с учеными специалистами и узданныя д-м Г. И. Радде, т.V, Тифлис, 1902, с. 205.

# ԽԱՉՔԱՐ ՀԻՆ ՋՈՒՂԱՅԻՑ

*Գույքահամար. հին՝ 182, նոր՝ 38:*

Խաչքար. չափերը՝ 191 x 63 x 15 սմ: Հին Ջուղայից 1874 թ. թանգարան է փոխադրել Գ. Ռադդեն: Վարդյակի շուրջ և դրանից ցած հեծյալի քանդակի կողքին՝ 6 տող.

*Թվ(ին) ՌԽԸ (1599), ս(ուր)բ խ(ա)չս յ(ի)շ(ա)տ(ակ է) | և բար(ե)խաւ|ս առ Ք(րիստո)ս Սաւլթա|յվալէ | հ(ո)գոյն:*

Հրատ. “Коллекции Кавказскаго музея”, обработанныя совместно с учеными специалистами и узданныя д-м Г. И. Радде, том V, Тифлис, 1902, с. 204-205.



# ԽՈՅԱՁԵՎ ՏԱՊԱՆԱՔԱՐ ՀԻՆ ՋՈՒՂԱՅԻՑ

*Գույքահամար. հին՝ 184, նոր՝ 41:*

Խոյաձև տապանաքար (կարմիր ավազաքար). չափերը՝ 104 x 65 սմ: Հին Ջուղայից 1874 թ. թանգարան է փոխադրել Գ. Ռադդեն: Երեսներից մեկին եռատող փորագրված է.

*Ա(յ)ս է հանգիստ / Մանասէ հոգ/ուն:*

Հրատ. “Коллекции Кавказскаго музея”, обработанныя совместно с учеными специалистами и узданныя д-м Г. И. Радде, том V, Тифлис, 1902, с, 205-206.



# ԽՈՅԱՁԵՎ ՏԱՊԱՆԱՔԱՐ ՀԻՆ ՋՈՒՂԱՅԻՑ

*Գույքահամար. հին՝ 185, նոր՝ 42:*

Խոյաձև տապանաքար. չափերը՝ 100 x 63 սմ: Հին Ջուղայից 1874 թ. թանգարան է փոխադրել Գ. Ռադդեն: Երեսներից մեկին քառատող փորագրված է.

*Խ(ա)չս յ(ի)շ(ա)տ(ա)կ է | Յովանի|սին, թվ(ին) | ՌԾԱ (1602):*

Հրատ. առաջին անգամ:



# ԽԱՉՔԱՐ ՀԻՆ ՋՈՒՂԱՅԻՑ

*Գույքահամար. հին՝ 179:*

Խաչքար. Հին Ջուղայից 1874 թ. թանգարան է փոխադրել Գ. Ռադդեն: Վարդյակի ձախ ստորին անկյունում փորագրված է.

*ՌԼ (1581) թ(վին):*

Հրատ. "Коллекции Кавказскаго музея", обработанныя совместно с учеными специалистами и узданныя д-м Г. И. Радде, т. V, Тифлис, 1902, с. 204.





## ԽԱՉՔԱՐ ՀԻՆ ՋՈՒՂԱՅԻՑ

*Գույքահամար. հին՝ 181, նոր՝ 37:*

Խաչքար. չափերը՝ 160 x 62 x 16 սմ: Թանգարան է փոխադրվել 1874 թ. Հին Ջուղայից: Խաչաքևերի և վարդյակի շուրջ փորագրված է.

*Ս(ուր)բ խաչս/ յ(ի)շ(ա)տ(ա)կ Դօ/իթին, թ(վին) ՌԽԹ (1600):*

Հրատ. “Коллекции Кавказскаго музея”, обработанныя совместно с учеными специалистами и узданныя д-м Г. И. Радде, т. V, Тифлис, 1902, с. 204.



# ԽԱՉՔԱՐ ՀԻՆ ՋՈՒՂԱՅԻՑ

*Գույքահամար. նոր՝ 40։*

Խաչքար. չափերը՝ 143 x 49 x 12 սմ։ Հին Ջուղայից 1874 թ. թանգարան է փոխադրել Գ. Ռադդեն։ Վարդյակի տակ հողմահար արձանագրությունից ընթերցվում են սկզբի երկու տողերը.

*Ս(ուր)բ նշանս տ/էրունական/...։*
Հրատ. առաջին անգամ։



# ԽԱՉՔԱՐ ՀԻՆ ՋՈՒՂԱՅԻՑ

*Գույքահամար. նոր՝ 121:*

Խաչքար. չափերը՝ 238 x 100 x 32 սմ: Հին Ջուղայից թանգարան է փոխադրել 1874 թ. Գ. Ռադդեն: Քիվին՝ մեկ տողով, իսկ հիմնախաչի վերին թևից ձախ՝ երկու կարճ տող, ելնդագիր գրչությամբ.

*Ս(ուր)բ խաչս բա(ր)եխա(ւ)ս Վերտի իշից (՞), թվ... | կազմող | ... Տ(է)ր Ո(հա)նս:*
Հրատ. առաջին անգամ:



# ՏԱՊԱՆԱՔԱՐ ՀԱՅԱՍՏԱՆԻՑ

*Գույքահամար. նոր՝ 204:*

Տապանաքար, օրորոցաձև. չափերը՝ 155 x 60 x 41 սմ: Թանգարան է փոխադրվել Հայաստանից (ստույգ տեղն անհայտ է): Հարավային երեսին պատկերաքանդակներ են, հյուսիսային կողմում իրար կից կամարաշարի ներքո 4 խաչեր են: Եվս մեկը քանդակված է արևմտյան նեղ կողին, իսկ արևելյան նեղ կողին 6 տողով արձանագրված է.

*Ես Մելիք | Խատուն Արին|ակով կ(ան)կ(ն)եցի | խաչս բարե|խաւս իմ որդ|ի Պարին Պ(ե)կ[կ](ի)ն:*

Հրատ. առաջին անգամ:



# ԽԱՉՔԱՐ ՀԻՆ ՋՈՒՂԱՅԻՑ

*Գույքահամար. հին՝ 180, նոր՝ 36:*

Խաչքար. Հին Ջուղայից 1874 թ. թանգարան է փոխադրել Գ. Ռադդեն: Կոտրված է՝ երկու մասի բաժանված: Հավերժության վարդյակի շուրջ չորս անկյուններում փորագրված է թվականը, իսկ դրանից ցած եռատող արձանագրություն է.

*Թվ(ին) ՌԽԹ (1600). Ս(ուր)բ խաչս յիշ(ա)տ(ա)կ է/ Մէրխ(ա)սին հո/գոյն, թվ(ին) ՌԽԹ (1600):*

Հրատ. "Коллекции Кавказскаго музея", обработанныя совместно с учеными специалистами и узданныя д-м Г. И. Радде, т. V, Тифлис, 1902, с. 204.





# ԽՈՅԱՁԵՎ ՏԱՊԱՆԱՔԱՐԻ ԲԵԿՈՐ ՀԻՆ ՋՈՒՂԱՅԻՑ

*Գույքահամար. ?*

Խոյաձև տապանաքարի գեղաքանդակ գլխամաս (բեկոր): Հին Ջուղայից 1874 թ. թանգարան է փոխադրել Գ. Ռադդեն:



# ԽԱՉՔԱՐ

*Գույքահամար. ?*

Խաչքար. հայտնաբերման նախնական տեղն ու թանգարան փոխադրելու ժամանակն անհայտ են:



# ԽԱՉՔԱՐ

*Գույքահամար. նոր՝ 427:*

Խաչքար. թանգարան փոխադրելու ժամանակն ու նախնական տեղն անհայտ են: Պահպանված է խաչքարի ապակե նեգատիվը, որի գոյությունը հուշում է, որ հուշարձանը թանգարան է փոխադրվել ԺԹ դարի վերջին կամ Ի դարասկզբին: Ստորին մասում՝ 5 տող արձանագրություն:



# ԽԱՉՔԱՐ

*Գույքահամար. ՞*

Խաչքար. հայտնաբերման նախնական տեղն ու թանգարան փոխադրելու ժամանակն անհայտ են:



# ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԲԵԼՈՐԵՉԵՆՍԿԻՑ

*Գույքահամար. հին՝ 125, նոր՝ 30:*

Նեղ ու երկար արձանագիր սալիկ. չափերը՝ 89 x 22 x 20 սմ: Հայտնաբերվել է Մայկոպի գավառի Բելորեչենսկ ստանիցայի մոտ գտնվող եկեղեցու ավերակների մեջ: Արդեն 1893 թ. փոխադրված է եղել Կովկասյան թանգարան: Ունի ելնդագիր եռատող արձանագրություն.

*Կատարեցաւ եկեղեցիս | ձեռամբ քարգործ Խ|րատպ եւ... ափաճուն:*

Հրատ. "Коллекции Кавказскаго музея", обработанныя совместно с учеными специалистами и узданныя д-м Г. И. Радде, т. V, Тифлис, 1902, с. 197. Նաև՝ Кучук-Иоанесов, Армянская надпись XII столетия.– "Материалы по археологии Кавказа", выпуск III, Москва, 1893, с. 106-109.

Ծանոթ. Քուչուկ-Հովհաննիսյանի վերծանությունն է. «Կատարեցաւ եկեղեցիս ձեռամբ քարգործիս Մ... ըպէին. Հայոց... ՈԻ.ն»: Վերջում կարդացած «ՈԻ» տառերը տարեթիվ համարելով՝ վիմագիրը թվագրել է՝ 1171 թ. (620+551): Առանց որևէ քննության «Հայկական վերտառութիւն մի ԺԲ դարու» վերնագրով նույն հոդվածը հայերեն թարգմանությամբ լույս է տեսել նաև «Բազմավէպ» հանդեսում (1893, էջ 193-196): Մինչդեռ Հարություն քահանա Միրիմանյանցն ու Ա. Թումանյանցը վիմագրի երրորդ տողում տարեթվի փոխարեն կարդացել են «Կաֆայուն» (տես՝ "Коллекции Кавказскаго музея", с. 197):



## ՏԱՊԱՆԱՔԱՐԻ ԲԵԿՈՐ

*Գույքահամար.* [?]

Տապանաքարի բեկոր. նախնական տեղն ու թանգարան փոխադրելու ժամանակն անհայտ են: Ունի երկտող արձանագրությունը.

*Այս է տապան Պաշընճաղեցի Տ(է)ր Նազ... / ... թվ(ին) ՌՃՀԵ (1726):*

Հրատ. առաջին անգամ:



# ՋԳՐԱՇԵՆԻ ՍԲ. ԱՎԵՏՅԱՑ ԵԿԵՂԵՑՈՒ ԲԱՐՁՐԱՔԱՆԴԱԿՆԵՐ

*Գույքահամար. նոր՝ 191-192:*

Բարձրաքանդակներ: Թանգարան են փոխադրվել Ջգրաշենի Սբ. Ավետյաց եկեղեցուց 1949 թ.՝ եկեղեցին քանդելու ընթացքում: Ի սկզբանե ագուցված են եղել եկեղեցու թմբուկի վերնամասում:







# ԱՐՁԱՆ ՈՍԿԵՎԱՆԻՑ

*Գույքահամար. ՞*

Մարդու քարակերտ արձան: Հայտնաբերվել է Ոսկևան գյուղից (Տավուշի մարզ): Թանգարան է փոխադրվել Սմբատ Տեր-Ավետիսյանի ջանքերով 1910-ական թվականների սկզբներին:



# ԽԱՉՔԱՐԻ ՊԱՏՃԵՆ ԴԻՐԲ ԳՅՈՒՂԻՑ

*Գույքահամար* ⁰

Խաչքար. պատճեն պատրաստելու և թանգարան փոխադրելու ստույգ ժամանակն ու հեղինակներն անհայտ են: Բնօրինակը գտնվում է Քարելի շրջանի Դիրբ գյուղում: Ագուցված է ջրաղացի վերածված հայոց Սբ. Աստվածածին եկեղեցու արևելյան ճակատին: Վերին խաչաթևի երկու կողմերում և ստորին մասում արձանագրված է.

*Թվ(ին) ՋԺԷ (1468) [խա]չդ Ք(րիստոս)ի, աւգնեա Ներսէ | [Դեկա]նոզ Նաթաւլի ծնողն եւ | զաւակ(ա)ց նորի:*

Հրատ. **Мурадян П. М.**, Армянская эпиграфика Грузии: Картли и Кахети, Ереван, 1985, с. 127.



# ԽԱՉՔԱՐ

*Գույքահամար. նոր՝ 224:*

Խաչքար. չափերը՝ 85 x 56 x 16 սմ: Թանգարան փոխադրելու ժամանակն ու նախնական տեղն անհայտ են: Ոճական և գեղարվեստական առանձնահատկություններով հար և նման է պատմական Գուգարքի ԺԳ-ԺԴ դարերի խաչքարերին: Վերին խաչաթևի երկու կողմերում երկտող փորագրված է.

*Ս(ուր)բ Սա|րգիս:*
Հրատ. առաջին անգամ:



# ԽԱՉՔԱՐ՝ ՓՈԽԱԴՐՎԱԾ ԴՄԱՆԻՍ ՔԱՂԱՔԱՏԵՂԻԻՑ

*Գույքահամար. նոր՝ 620:*

Խաչքար. չափերը՝ 44 x 25 x 11 սմ: Հայտնաբերվել է 1963 թ. Դմանիս քաղաքատեղիի պեղումների ընթացքում և փոխադրվել թանգարան: Թվագրման հավանական ժամանակաշրջանը՝ ԺԴ-ԺԶ դարեր: Խաչի ստորին մասում մեկ տողով անվարժ փորագրված է.

*Դավիթ:*

Հրատ. առաջին անգամ:



# ԽԱՉՔԱՐ՝ ՓՈԽԱԴՐՎԱԾ ՊԱՏԱՐԱ-ԻՐԱԳԱ ԳՅՈՒՂԻՑ

*Գույքահամար. նոր՝ 549:*

Խաչքար. չափերը՝ 75 x 58 սմ: Հայտնաբերվել է Թեքրի-Ծղարոյի շրջանի Պատարա-Իրագա գյուղում: 1958 թ. թանգարան է փոխադրել ազգությամբ հույն Պ. Լազարիդիսը: Խաչաքանդակի երկու կողմերում երեքական կարճ տողով փորագրված է.

*Թվ(ին) | ՋՀ(1521) | խ(ա)չս | Մո|ւր|ատէ:*
Հրատ. առաջին անգամ:



# ԽԱՉՔԱՐ

*Գույքահամար. նոր՝ 267:*

Խաչքար. չափերը՝ 118 x 53 x 11 սմ: Թանգարան փոխադրելու ժամանակն ու նախնական տեղն անհայտ են: Ոճական և գեղարվեստական առանձնահատկություններով հար և նման է Հյուսիսարևելյան Հայաստանի բազմաթիվ հնավայրերում պահպանված Ժ-ԺԱ դարերով թվագրվող խաչքարերին: Կոտրված է ինչպես վերին աջ անկյունից, այնպես էլ ստորին մասից:



# ԵԿԵՂԵՑՈՒ ՄԱՆՐԱԿԵՐՏ

*Գույքահամար.* ՞

Եկեղեցու մանրակերտ: Թանգարան փոխադրելու ժամանակն ու նախնական տեղն անհայտ են: Հավանաբար թվագրվում է ԺԳ դարով:



# ԱՂԲՅՈՒՐԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԴՄԱՆԻՍԻՑ

*Գույքահամար. նոր 302:*

Աղբյուրի շինարարական քառատող արձանագրությամբ սպիտակ քար. չափերը՝ 48 x 28 x 8 սմ: Հայտնաբերել է Կորնել Կեկելիձեն Դմանիս գյուղի աղբյուրի հատակից և փոխադրել թանգարան: Հնգատող վիմագրի բովանդակությունն է.

*Շինեցաւ աղբ/իւրս յիշատակ / Կարապետի որդի / Սարգիսին, ՌճԾԱ (1702) / թվին:*

Հրատ. առաջին անգամ:



# ԱՐՁԱՆԱԳԻՐ ԽՈՅԱԿ ԲԱՂԴԱՏԻՍ-ԽԵՎԻՑ

*Գույքահամար. նոր՝ 542:*

Եկեղեցու սյան խոյակ. չափերը՝ 43 x 31 x 23 սմ: Նյութը՝ մոխրագույն կրաքար: Կոտրված է երկու մասի: Հայտնաբերվել է 1957 թ. Բոլնիսի շրջանի Բոլնիս-Խաչեն գյուղի տարածքում գտնվող «Բաղդադիսխևի» կոչված գյուղատեղիի եկեղեցու ավերակների մեջ: Լայնակի երեսին արձանագրված է հինգ տող.

*Հայոց թվական/ութեանն :Ն:Ծ:Դ: (1005) | ...սարգաւ/...մք ես Ս/... աշկալիտ(՞)...:*
Հրատ. առաջին անգամ:



# ԽԱՉՔԱՐ

*Գույքահամար. նոր` 280:*

Խաչքար. չափերը` 32 x 18 x 7 սմ: Նախնական տեղն ու թանգարան փոխադրելու ժամանակն անհայտ են:



# ԽԱՉՔԱՐ

*Գույքահամար. նոր՝ 280(ա):*

Խաչքար: Նախնական տեղն ու թանգարան փոխադրելու ժամանակն անհայտ են:



# ԽԱՉՔԱՐԻ ԲԵԿՈՐ

*Գույքահամար. նոր՝ 274:*

Խաչքարի բեկոր. չափերը՝ 58 x 19 x 15 սմ: Թանգարան փոխադրելու ժամանակն ու հայտնաբերման վայրն անհայտ են: Ոճական և գեղարվեստական առանձնահատկություններով հար և նման է Դմանիս քաղաքատեղիում պահպանված ԺԳ դարի սկզբներով թվագրվող որմնափակ խաչքարերին: Ուստի, կարծում ենք, խաչքարի այս բեկորն էլ թանգարան է փոխադրվել նույն վայրից: Եզրագոտիով ձգվում է կիսաեղծ միատող արձանագրություն:





# ԱՐՁԱՆԱԳԻՐ ՔԱՐԱԲԵԿՈՐ

*Գույքահամար. նոր՝ 946:*

Արձանագիր քարաբեկոր: Թանգարան է փոխադրվել Մառնեուլից: Վիմագրի պահպանված բովանդակությունից հասկացվում է, որ խոսքը Սանահինի թեմական իրավասության ներքո գտնվող մի եկեղեցու կառուցման մասին է: Պահպանվել է միջնամասը՝ սկզբից և վերջից թերի հնգատող շինարարական արձանագրությամբ.

*...(հայրե)նիք տվեածէն ի վախմ Սա(նահնու)...*
*...ս առաջնորդութ(եամբ)...*
*...(Սարգի)ս եպ(իս)կ(ոպո)ս շինեցի զե(կեղեցիս)...*
*...թե(ան) Ս(ուր)բ Ա(ստուա)ծածնին յ...*
*թվ(ին) ՌՁԷ (1638):*

Հրատ. առաջին անգամ:



## ԽԱՉԱԿՈԹՈՂ ՍՈՂՔԻՑ

*Գույքահամար. նոր՝ 122:*

Խաչակոթող. չափերը՝ 306 x 49 x 34 սմ: Թանգարան է փոխադրել Ե. Լալայանը Սողք ավանից: Քառանիստ է, երեք կողմերից՝ գեղաքանդակ ու արձանագիր: Դիմային երեսին կա նաև թվականը.

*Շնորհօք Աստուծոյ եւ Այտին Պալասանն, Դալաք բէկս, Աստուածապաւս ծառայք Աստուծոյ կանկնեցուցաք սուրբ խաչս բարեխաւս ծնողաց մերոց Քամալին եւ Փարին, Սոլտանին, Մահպուբին. թվին ՌՃԲ (1653):*

Հրատ. **Մեսրովբ արքեպիսկոպոս Սմբատեանց**, Տեղագիր Գեղարքունի ծովազարդ գաւառի, Վաղարշապատ, 1895, էջ 620: **Լալայեան Ե.**, Ազգագրական հանդէս, XIX, էջ 26: «Դիվան հայ վիմագրության», կազմ. Ս. Բարխուդարյան, պր. IV, Երևան, 1973, էջ 333:

Ծանոթ. այս և համանման երկու կոթողները Սողք ավանից թանգարան է փոխադրել Ե. Լալայանը (դա պետք է կատարված լինի 1903 թ-ից առաջ, քանի որ այդ թվականին դրանք արդեն ցուցադրված էին թանգարանում): Եղել է երեք կոթող, բայց Թիֆլիս փոխադրելու ժամանակ ճանապարհին դրանցից մեկը (1653 թ.) սայլից սահելով՝ ընկնել է: Կոտրված ու անպետքացած համարվելով՝ թողնվել է ճանապարհին: Վերջինս 1911 թ. Մ. Տեր-Մովսիսյանը փոխադրել է Սբ. Էջմիածին և տեղադրել ճեմարանի բակում, որտեղ է և ցայժմ: Մյուս երկու կոթողը հասցվել է Թիֆլիս: 1903 թ. թանգարանի այցելուներից մեկը՝ Անդրեյ Ֆիրսովը, նշել է. «Այստեղ դուք կտեսնեք ... Էրիվանի նահանգից քրիստոնեական խաչեր...» (բնագրում՝ “Здесь вы увидите ... христианские кресты из Эриванской губернии...”, Фирсов Андрей, Кавказский музей.– “Кавказ”, 1903, № 84, с. 2):

1986 թ. «Արմագի» թանգարանում երկու կոթողից մեկը արդեն տեսել ենք կոտրտված:



# ԽԱՉԱԿՈԹՈՂ ՍՈՂՔԻՑ

*Գույքահամար. նոր՝ 123:*

Խաչակոթող. չափերը՝ 272 x 58 x 36 սմ: Թանգարան է փոխադրել Ե. Լալայանը Սողք ավանից: Քառանիստ է: Բոլոր կողմերն էլ քանդակազարդ են: Հյուսիսային նիստին՝ ելնդագիր 5 տող.

*Կամօ(քն) ա(ստուծո)յ Ես Յ/ակ(ո)բս կ(ա)նկ(նե)ցի ... / ... խ(ա)չս բ(ա)րէխ(աւ)ս/ ծնօղ(ա)ցն իմ Պա/յին մորն, թ(վին) ՌՀԷ (1628):*

Հրատ. **Մեսրովբ արքեպիսկոպոս Սմբատեանց**, Տեղագիր Գեղարքունի ծովազարդ գաւառի, Վաղարշապատ, 1895, էջ 622: **Լալայեան Ե.**, Ազգագրական հանդէս, XIX, էջ 26: «Դիվան հայ վիմագրության», կազմ. Ս. Բարխուդարյան, պր. IV, Երևան, 1973, էջ 332:

Տարընթերցում. Ըստ Լալայանի՝ «Կամաւն Աստուծոյ ես Յակոբս կանկնեցի զս(ուր)բ խաչս բ(ա)րեխոս ծնողացն իմ Իպային (եւ) Անհային, թվ. ՌՁԷ» (1638): Սմբատյանցի մոտ տարեթիվն է՝ «ՌՃԸ» (1659), և չունի «Անհայ» անձնանունը:



# ՏԱՊԱՆԱՔԱՐ ՀԱՐԱՆՑ ՎԱՆՔԻՑ

*Գույքահամար. նոր՝ 707:*

Տապանաքար. չափերը՝ 180 x 89 x 2 սմ, նյութը՝ մարմար: 1938 թ. վանքի ավերման ժամանակ բազմաթիվ այլ տապանաքարերի հետ փոխադրվել է մարմարի մշակման արհեստանոց, որտեղից երջանիկ պատահականությամբ տեղափոխվել է թանգարան:

1993 թ. «Արմազի» թանգարանի տանիքի փլուզման հետևանքով տապանաքարը փշրվել է:

Արձանագրությունը հնգական տողով փորագրված է նախ ռուսերեն, ապա հայերեն և վրացերեն: Հայերենի բովանդակությունը հետևյալն է.

*Մարիամ Իսահակեան Մելիք-Աղամալեան, | ամուսին արքայազն Աղէքսանդրի, | որդւոյ Հերակլ արքայի վրաց, | ծնեալ ի 12-ն օգոստոսի 1808 ամի | եւ վախճանեալ 7-ն հոկտեմբերի 1882 ամի:*

Հրատ. **Мурадян П. М.**, Армянская эпиграфика Грузии: Тбилиси, Ереван, 1988, с. 62.



# ԱՐՁԱՆԱԳԻՐ ԽԱՉՔԱՐԻ ԲԵԿՈՐ

*Գույքահամար* ?

Խաչքար: Նախնական տեղը, փոխադրողի անունն ու ժամանակն անհայտ են: Թիկունքին` 10 տող.

*Յ[անուն աստուծոյ] ես / Դաւիթ կանգնեց/ի զխաչս մաւտ յի/մ այգիս եւ ետու / զերեւորս ի վանքս, / զի հողս վանացս / էր եւ այլքն իմ / զաւակացն է եւ ե/թէ ի մեզանէ չլինի / ...ամէն վանացս:*

Հրատ. առաջին անգամ:



## ՄՇՈ ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔԻ ԴՈՒՌԸ

Մշո Առաքելոց վանքի երկփեղկ փայտակերտ, քանդակազարդ դուռ. վերնամասում՝ պատկերաքանդակներից ցած՝ ելնդագիր արձանագրություն.

*Ի թ(վին) Հ(այոց) ՇՁԳ (1134). ես Տ(է)ր Թորոս եւ Գրիգոր եւ Ղուկաս գծ(ող):*

Հրատ. **Սարգիսեան Ն.**, Տեղագրութիւնք ի Փոքր եւ ի Մեծ Հայս, Վենետիկ, 1864, էջ 232: **Тер-Аветисян С.**, Резная дверь 1134 г. из окрестностей гор. Муша.– "Известия Кавказского историко-археологического института", Тифлис, 1925, с. 130.

Ծանոթ. 1922 թ. Սմբատ Տեր-Ավետիսյանն իր միջոցներով դուռը փոխադրել է Երևան և հանձնել Հայաստանի պատմության պետական թանգարանին:



# ԽԱՉՔԱՐ ԾԱԼԿԱՅԻ ՇՐՋԱՆԻՑ

*Գույքահամար. նոր՝ 523:*

Խաչքար. չափերը՝ 225 x 61 սմ: 1988 թ. գտնվում էր Թբիլիսիի արվեստի թանգարանի բակում: Փոխադրվել է Ծալկայի շրջանի Գունիա-կալա հունաբնակ գյուղի «Այիբնե-մատի» եկեղեցու բակից: Խաչքարի ստորին մասում կա հայերեն և վրացերեն հետևյալ արձանագրությունը.

*Թվ(ին)/ ՈԼԷ (1188). / ես / Խ/ա/ն/կրո՞ս / ա ՇԾ (550) / մբեցի կակնեց/աք զխաչս ա բար/էխաւս ...աբալա՞ղ:*

Ծանոթ. ի դեպ, 1991 թ. մեր կողմից խաչքարի լուսանկարումը թանգարանի աշխատակիցներին այն աստիճան անցանկալի էր թվացել, որ հավանաբար ազգությամբ հայ այցելուների աչքից թաքցնելու նպատակով հաջորդ օրերին չէին զլացել խաչքարը քողարկել մոմլաթով:





# ՔԱՌԱԿՈՂ ԿՈԹՈՂ ԲՐԴԱՁՈՐԻՑ

*Գույքահամար՞:*

Քառակող կոթող. Ե-Է դարեր: Հայտնաբերվել է Բրդաձոր գյուղի մոտից (հայաբնակ գյուղ Մառնեուլի շրջանում) և փոխադրվել Թբիլիսիի արվեստի թանգարանի բակ:





# ԽԱՉԵՆԻ ԻՇԽԱՆ ՀԱՍԱՆ ՋԱԼԱԼԻ ԴԱՇՈՒՅՆԻ ՊԱՏՅԱՆԸ

*Գույքահամար, հին՝ 851.*

Դաշույնի պատյան (նեֆրիտ). 4 փակագիր՝ 2 տողով.

*Հասան Ջալալ իշխան Խաչենոյ:*

Հրատ. **Орбели И.**, Нефритовая кинжальная рукоять с армянской надписью, “Избранные труды”, Ереван, 1963, с. 135-145.

Ծանոթ. արձանագրությունը 1908 թ. Օրբելուն է տրամադրել Կովկասյան թանգարանի տնօրենի օգնական դ-ր Ռ. Շմիդտը: Հայտնաբերման վայրն անհայտ է: 1866 թ. գնել է Գ. Ռադդեն:

# ԿՈՎԿԱՍՅԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԻ ՍԵՊԱԳԻՐ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Գույքահամար. հին՝ 187:*
Սեպագիր արձանագրություն: Գտնվել է Սևանա լճի հարավային ափին՝ Աղիաման (այժմ՝ Գեղարքունիքի մարզ, Ներքին Գետաշեն) գյուղի մոտ: Թանգարան է փոխադրվել Գ. Ռադդեի ջանքերով:

*Գույքահամար՞*
Սեպագիր արձանագրությունը հայտնաբերել է Ա. Երիցյանը մահմեդական օսերով բնակեցված Վերին Սարիղամիշ գյուղի մզկիթի պատի մեջ (Կարսի մարզ): Գյուղացիների վկայության համաձայն արձանագրությունը գյուղ էին փոխադրել 5 վերստ հեռավորության վրա գտնվող անտառներից:

*Գույքահամար. նոր՝ 82:*
Քառանկյունի սեպագիր 7 տող արձանագրությամբ քար, չափերը՝ 22 x 53 x 60 սմ: Հանվել ու թանգարան է փոխադրվել Վանի Կարմրավոր վանքի պատից:

*Գույքահամար. նոր՝ 85:*
Կլոր մոխրագույն միջնամասում փոս քար, չափերը՝ 70 x 27 սմ: Թանգարան է փոխադրվել Կազանցովի ջանքերով Վարագ վանքից:

*Գույքահամար. նոր՝ 86:*
Քառանկյունի սրբատաշ քար, երեսին 9 տող սեպագիր արձանագրություն: Թանգարան է փոխադրվել Կազանցովի ջանքերով Վանի միջնաբերդից:

*Գույքահամար. նոր՝ 87:*
Սյունաքար, տրամագիծը՝ 76 սմ, բարձրությունը՝ 48 սմ: Նյութը՝ մոխրագույն բազալտ: Թանգարան է փոխադրվել Կազանցովի ջանքերով Վանի Ծվստան գյուղից:

*Գույքահամար. նոր՝ 88-89:*
Սեպագիր արձանագրություններով քարեր: Թանգարան են փոխադրվել Վանի Ծվստան գյուղից:

*Գույքահամար. նոր՝ 90:*
Սեպագիր արձանագրությամբ քար, չափերը՝ 90 x 42 x 29 սմ: Թանգարան է փոխադրվել Վանի հին քաղաքամասից:

*Գույքահամար. նոր՝ 91:*
Սեպագիր արձանագրությամբ քար: Թանգարան է փոխադրվել Վանի Սբ. Պողոս եկեղեցուն կից տան մոտից:

*Գույքահամար. նոր՝ 92:*
Սեպագիր արձանագրությամբ քար, չափերը՝ 72 x 27 սմ: Թանգարան է փոխադրվել Ա. Կազանցովի ջանքերով Վանից 10 կմ հյուսիս-արևելք գտնվող քրդաբնակ Անձավ գյուղից :

*Գույքահամար. նոր՝ 93:*
Սեպագիր արձանագրությամբ քար: Տրամագիծը՝ 73 սմ, բարձրությունը՝ 30 սմ: Թանգարան է փոխադրվել Ա. Կազանցովի ջանքերով Վանից 10 կմ հյուսիս-արևելք գտնվող քրդաբնակ Անձավ գյուղից:

*Գույքահամար. նոր՝ 94:*
Սեպագիր արձանագրությամբ քառանկյունի քար: Չափերը՝ 63 x 80 x 68 սմ: Թանգարան է փոխադրվել Վանի միջնաբերդի ստորոտից:

*Գույքահամար. նոր՝ 95:*
Սեպագիր արձանագրությամբ քառանկյունի քար: Չափերը՝ 70 x 35 սմ: Թանգարան է փոխադրվել Վանից՝ մասնավոր տան պատից:

*Գույքահամար. նոր՝ 98:*
Սեպագիր արձանագրությամբ քար, չափերը՝ 100 x 67 x 33 սմ: Գտնվել է Վանի Կուշունջամի վայրից և թանգարան փոխադրվել 1898-99 թթ. :

*Գույքահամար. նոր՝ 99:*
Սեպագիր արձանագրությամբ քար, չափերը՝ 42 x 36 x 26 սմ: Թանգարան է փոխադրվել Մուշից Ա. Կազանցովի ջանքերով:

## ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԻ ՑԱՆԿ

**Շնորհակալ ենք բոլոր այն անհատներին և կազմակերպություններին, ովքեր նախապես բաժանորդագրվելով սույն աշխատությանը դրանով իսկ աջակից են եղել գրքի լույս ընծայման գործին:**

Անջարգոլյան Սառա (Երևան)............................1
Ալիկյան Դավիթ (Երևան)..................................1
Արմենյան Ատկեն (Երևան).................................1
Խաչերյան Հրայր-Բազե (Երևան)......................1
Կարապետյան Գասպար (Աթենք) ....................1
«Հորիզոն» շաբաթաթերթ (Մոնրեալ)..................1
Մութաֆյան Արմեն-Կլոդ (Փարիզ)......................1
«ՇԵՆ» միություն (Երևան)................................10
Վարդանյան Աննա (Երևան)...............................1

# **ԿՈՎԿԱՍՅԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՎԱՔԱԾՈՒՆ**

ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

**RAA ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱԶՄ**

ԽՄԲԱԳԻՐ-ՄՈՒՏՔԱԳՐՈՂ **ԷՄՄԱ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
ՍՐԲԱԳՐԻՉ **ՀԱՍՄԻԿ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
ՀԱՄԱԿԱՐԳՉԱՅԻՆ ՁԵՎԱՎՈՐՈՂՆԵՐ **ԱՐՄԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ**
**ՊԱՐԳԵՎ ՖՐԱՆԿՅԱՆ**
**ՄԱՐԻՆԵ ՆԱԶԱՐՅԱՆ**

ՍՏՈՐԱԳՐՎԱԾ Է ՏՊԱԳՐՈՒԹՅԱՆ **14 ՀՈԿՏԵՄԲԵՐ, 2004**
ՏՊԱՔԱՆԱԿ **500**
ՏՊԱԳՐՎԱԾ Է **PHOTOGRAVURE ZAVEN & FILS** (ԲԵՅՐՈՒԹ)

ԵՐԵՎԱՆ 2004